## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 60-ԱՄՅԱԿԻՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵԼՈՒ ԱՌՆՉՈՒԹՅԱՄԲ ՎՐԱՑԱԿԱՆ ՍՍՀ-Ի ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

**ՍՄԿԿ Կենտկոմը քննարկել է «ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նախապատրաստվելու առնչությամբ Վրացական ՍՍՀ-ի կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մասին» հարցը:**

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշել է, որ Վրացական ՍՍՀ-ի կուսակցական կազմակերպությունները ու աշխատանքային կոլեկտիվները ողջ սովետական ժողովրդի հետ միասին պատրաստվում են արժանավայել դիմավորելու ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը՝ որպես քաղաքական մեծ կարևորություն ունեցող իրադարձություն, լենինյան ազգային քաղաքականության, մեր երկրի ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հաղթանակի վկայություն:

Վրաստանի կոմկուսի Կենտկոմը հոբելյանի նախապատրաստության առնչությամբ կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների ողջ կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը նպատակամղում է աշխատողների մոբիլիզացմանը՝ կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի պատմական որոշումների, 1982 թվականի և ամբողջ տասնմեկերորդ հնգամյակի պլանների կատարման համար: Կուսակցական կոմիտեները, ձգտելով ամրապնդել այն դրական արդյունքները, որ հանրապետությունում ձեռք են բերվել կուսակցության Թբիլիսիի քաղկոմի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշման, Վրացական ՍՍՀ-ի կուսակցական ղեկավարման և սոցիալ-տնտեսական զարգացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հետագա որոշումների իրականացման ընթացքում, մշտապես ուշադրություն են դարձնում 1981 թվականին Վրաստան կատարած ուղևորության ժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևի տված ցուցումների ու հանձնարարականների իրականացմանը:

Վերջին տարիներս հանրապետությունում ավելի ու ավելի է հաստատվում քաղաքական, սոցիալական ու տնտեսական պրոբլեմների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման պրակտիկան: Ավելի մարտունակ են դարձել կուսակցական կազմակերպությունները, պրոտեկցիոնիզմի վնասակար ավանդույթների, մասնավոր սեփականատիրական միտումների և սոցիալիստական ապրելակերպի նորմերից կատարվող մյուս նահանջների դեմ անզիջում պայքար է մղվում, որը նպաստում է բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի ստեղծմանը աշխատավորական կոլեկտիվներում, մասսաների նախաձեռնության և ակտիվության զարգացմանը: Ամրապնդվել է Սովետական Վրաստանի տնտեսական պոտենցիալը, մեծացել է նրա ներդրումը երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսում:

Պատրաստվելով արժանավայել դիմավորել ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը և ղեկավարվելով ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Գործեցեք ավելի համարձակ, աշխատեցեք ավելի համառորեն, այսուհետ ևս բարձրացրեք Սովետա-

կան Վրաստանի հեղինակությունը» պատվիրանով, հանրապետական կուսակազմակերպությունը մեծ ուշադրություն է նվիրում արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, յուրաքանչյուր ճյուղում լավագույն վերջնական արդյունքների հասնելու նպատակով սոցիալիստական մրցության ծավալմանը: Հոբելյանական մրցության մեջ առաջատար դեր է կատարում Վրաստանի բազմազգ բանվոր դասակարգը:

Հանրապետության ողջ արդյունաբերությունը կատարում է պլանային առաջադրանքները տեխնիկատնտեսական հիմնական ցուցանիշների առումով և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները: Քաղաքի ու գյուղի կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների, բոլոր աշխատավորների ուշադրության կենտրոնում են պարենային ծրագրից բխող խնդիրները: Աշխատանք է տարվում արժեքավոր մերձարևադարձային կուլտուրաների արտադրության ավելացման, անասնապահության զարգացման, բնակչության անձնական օժանդակ տնտեսություններում սննդամթերքների արտադրության ավելացման նպատակով:

Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է, որ կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները պետք է այսուհետ ևս կատարելագործեն սոցիալիստական մրցությունը և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, ավելի մեծ հաստատակամություն դրսևորեն, որպեսզի էկոնոմիկան գերազանցապես ինտենսիվ ուղիով զարգացնելու կուսակցության կուրսը մարմնավորվի աշխատավորական բոլոր կոլեկտիվների պրակտիկ գործերում և այդ հիման վրա ավելի լրիվ օգտագործվեն հանրապետության արտադրաուժերի հետագա զարգացման առկա մեծ հնարավորությունները:

Հարկավոր է անհետաձգելի միջոցներ ձեռնարկել արտադրանքի թողարկման և իրացման, պայմանագրային մատակարարումների, աշխատանքի արտադրողականության աճի պլանների կատարման գործում մի շարք ձեռնարկությունների ետ մնալը հաղթահարելու համար: Բարելավել գործերի վիճակը կապիտալ շինարարության բնագավառում: Ուժեղացնել ուշադրությունը տնտեսման ու խնայողության հարցերի նկատմամբ: Ձգտել հասնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացման, հանրային անասնապահության մթերատվության աճի:

Մշտապես հոգալ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ընդլայնելու և որակը բարելավելու, սպասարկումների ոլորտը զարգացնելու, աշխատավորների ամենօրյա կարիքներն ավելի լրիվ բավարարելու, մարդկանց նկատմամբ զգայուն վերաբերմունք ցուցաբերելու նկատմամբ:

ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նախապատրաստվելու ընթացքում հանրապետության կուսակցական կազմակերպությունները հարստացել են պրոպագանդիստական և ագիտացիոն-մասսայական աշխատանքի, աշխատավորների կոմունիստական դաստիարակության նոր փորձով: Մեծանում է ղեկավար կադրերի պատասխանատվությունը դաստիարակչական աշխատանքի վիճակի համար:

Կուսակցական, սովետական, տնտեսական շատ ղեկավարներ, այդ թվում՝ կուսակցության Կենտկոմի բյուրոյի անդամներ, մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների քարտուղարներ, հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ պրոպագանդիստներ են սկզբնական կուսկազմակերպություններում, սիստեմատիկաբար լինում են աշխատավորական կոլեկտիվներում, հանդես գալիս դասախոսություններով ու զեկուցումներով, մասնակցում միասնական քաղօրերին, հասարակական-քաղաքական ընթերցումներին:

Աշխուժացել է գիտության, մշակույթի հիմնարկների, ստեղծագործական միությունների և կազմակերպությունների գործունեությունը: Հաջողությամբ անցկացվում են միութենական հանրապետությունների օրեր ու փառատոներ, ինտերնացիոնալ բարեկամության երեկոներ: Թատրոնների խաղացանկերը լրացվել են եղբայրական հանրապետությունների հեղինակների ստեղծագործություններով: Հոբելյանական թեմատիկան ամեն օր լուսաբանվում է մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցներով:

Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրել է գաղափարադաստիարակչական աշխատանքի ավելի մեծ հրատապությունը ապահովելու, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի առաջադրած խնդիրների, արդի միջազգային իրադրության առանձնահատկությունների հետ սերտորեն շաղկապելու անհրաժեշտության վրա: Կարևորը ոչ միայն իրագործվող միջոցառումների թիվն է, այլև դրանց գաղափարաքաղաքական խոր բովանդակությունը, դաստիարակչական ներգործությունը:

Գաղափարական ներգործության բոլոր միջոցներով պետք է ավելի լայնորեն ցուցադրել ՍՍՀ Միության կազմավորման պատմական նշանակությունը, բանվոր դասակարգի, ՍՄԿԿ-ի դերը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների ինտերնացիոնալ համախմբման գործում: Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները պետք է ավելի ցայտուն ու համոզիչ լուսաբանեն սոցիալիզմի պատմական նվաճումները, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում կոմունիստական շինարարության ասպարեզում Սովետական Վրաստանի ձեռք բերած հաջողությունները:

Հատուկ ուշադրություն նվիրել երիտասարդության հետ տարվող աշխատանքին, նրա քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը, խոր հայրենասիրության, հաստատուն ինտերնացիոնալիստական համոզմունքների, բոլոր ուժերը սիրելի հայրենիքի բարգավաճման ու պաշտպանության գործին նվիրաբերելու պատրաստակամության դաստիարակմանը: Ավելի համարձակ առաջ քաշել երիտասարդ կադրերին, ավելի շատ վստահություն ցույց տալ նրանց:

ՍՄԿԿ Կենտկոմը շեշտել է ժողովուրդների եղբայրական բարեկամության հետագա ամրապնդման, աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության կատարելագործման, հասարակության կյանքի բոլոր ոլորտներում սոցիալիստական դեմոկրատիզմի ամրապնդման նպատակով հանրապետական կուսակցական կազմակերպության հետևողական աշխատանքի կարևոր նշանակությունը:

ՍՄԿԿ Կենտկոմը նշել է, որ հանրապետությունում իրականացվում են Աբխազական ԻՍՍՀ-ի, Աջարական ԻՍՍՀ-ի, Հարավ-Օսեթական Ինքնավար Մարզի համակողմանի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական զարգացման միջոցառումներ: Ուժեղացված է գաղափարադաստիարակչական աշխատանքը տարբեր ազգությունների շրջանում, մեծացել է ուշադրությունը նրանց մշակույթների հետագա զարգացման նկատմամբ: Միջոցներ են ձեռնարկված վրացերենի, աբխազերենի, օսերենի և հանրապետության մյուս ազգությունների ու ժողովուրդների լեզուների, ռուսաց լեզվի՝ որպես ազգամիջյան հաղորդակցման միջոցի, դասավանդումը և ուսումնասիրումը բարելավելու համար: Այդ ամենը նպաստում է հանրապետությունում ապրող ազգերի և ազգությունների բոլոր ներկայացուցիչների միջև փոխըմբռնման ու վստահության մթնոլորտի հաստատմանը:

Ամրապնդվում և ընդլայնվում են Սովետական Վրաստանի կապերը եղբայրական միութենական հանրապետությունների հետ: Մեծ նշանակություն է հատկացվում աշխատավորներին ռուս ժողովրդի հետ բարեկամության զգացմունքների հարստացմանը: Դրան մասնավորապես նպաստում է ռուս և վրաց ժողովուրդների բարեկամության ու եղբայրության առաջին մանիֆեստի՝ Գեորգիևյան պայմանագրի ստորագրման 200-ամյակի՝ հանրապետությունում ծավալված նախապատրաստությունը: Սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դաստիարակության, քաղաքական ու աշխատանքային կոփման դպրոց են դարձել ԲԱՄ-ի, Տյումենի, ոչ սևահողային գոտու կառույցների բազմազգ կոլեկտիվները, որտեղ հաջողությամբ են աշխատում Սովետական Վրաստանի պատվիրակները:

Բնակչության ռազմահայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության աշխատանքում նշանակալից դեր են խաղում «Լ. Ի. Բրեժնևը Մալայա զեմլյայում» դիորաման, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, Ան-

դըրկովկասի կարմրադրոշ զինվորական օկրուգի զորքերի, 18-րդ բանակի պատմության (Մախարաձե քաղաքում) թանգարանները:

Սոցիալիստական լայն դեմոկրատիզմի և ազգային հարաբերությունների ամրապնդման ասպարեզում նրա հսկայական դերի համոզիչ վկայությունն են ժողովրդական դեպուտատների տեղական սովետների 1982 թվականի հունիսի 20-ին կայացած ընտրությունների արդյունքները:

ՍՄԿԿ Կենտկոմը նշել է, որ սոցիալ-տնտեսական ու քաղաքական-դաստիարակչական խնդիրների լուծման՝ հանրապետությունում ձեռք բերված արդյունքները պայմանավորված են հանրապետական կուսակցական կազմակերպության ղեկավարման բարձր մակարդակով, աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործմամբ, մասսաների հետ կուսակցական կազմակերպությունների կապի ամրապնդմամբ: Վրաստանի կոմկուսի Կենտկոմի, կուսակցական կոմիտեների և սովետական մարմինների գործունեությանն ավելի ու ավելի բնորոշ են դառնում կոլեգիալությունը, կոնկրետությունն ու խորությունը պրոբլեմներն ուսումնասիրելիս և լուծելիս, քննադատության և ինքնաքննադատության զարգացումը: Կուսակցական կոմիտեները հետևողականորեն վարում են սկզբնական կուսկազմակերպությունների հեղինակության հետագա բարձրացման կուրսը:

Կարևոր նշանակություն է տրվում կուսակցական որոշումների ներգործունության բարձրացմանը, դրանց կատարման կազմակերպմանը:

Սակայն տնտեսական ու կուլտուրական շինարարության անող խնդիրները կուսակցական կոմիտեներից պահանջում են այսուհետ ևս կատարելագործել իրենց գործունեության ձևերն ու մեթոդները, բարձրացնել կոմունիստների, ղեկավար կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, ըստ ամենայնի ամրապնդել աշխատանքի ստեղծագործական ոճը:

ՍՄԿԿ Կենտկոմը հանրապետական կուսկազմակերպության կարևորագույն խնդիրն է համարում այսուհետ ևս նպատակասլաց աշխատանք կատարել ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների իրավահավասարության, փոխադարձ հարգանքի ու վստահության, եղբայրական բարեկամության հիման վրա հանրապետության ազգերին և ազգություններին մերձեցնելու ուղղությամբ: Հետևողականորեն դաստիարակել դասակարգային մոտեցում պատմական փաստերի և իրադարձությունների գնահատման նկատմամբ, ակտիվորեն հանդես գալ ազգային սահմանափակվածության դրսևորումների դեմ: Փաստարկված կերպով ցույց տալ սոցիալիզմի պատմական առավելությունները, վճռական հակահարված հասցնել սոցիալիզմի նկատմամբ թշնամական բուրժուական գաղափարախոսությանն ու պրոպագանդային:

Արտադրության վճռական տեղամասերում կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու նպատակով հարկավոր է բարելավել սկզբնական կուսակցական կազմակերպությունների կառուցվածքը, կոմունիստների տեղաբաշխումը, բարձրացնել նրանց ավանգարդային դերը արտադրության մեջ և հասարակական կյանքում: Կուսակցական շարքերի աճը կարգավորելիս, կուսակցական ու պետական ընտրովի մարմինները կազմավորելիս, կադրերին ղեկավար աշխատանքի առաջ քաշելիս հաշվի առնել հանրապետության բնակչության ազգային կազմը:

Ըստ ամենայնի զարգացնել և խորացնել սոցիալիստական դեմոկրատիան, բարելավել ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների կուսակցական ղեկավարումը, հոգալ տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրները լուծելիս նրանց դերի ու ակտիվության հետագա բարձրացման մասին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնել, որ հանրապետության բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը ՍՄԿԿ-ի փորձառու ջոկատի՝ Վրաստանի կոմկուսի ղեկավարությամբ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության 60-ամյակը կնշանավորեն նոր հաջողություններով հոբելյանական տարվա պարտավորությունների և ողջ հնգամյակի կատարման, ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների, կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման ասպարեզում:

# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՊՐԱՎԴԱ» ԼՐԱԳՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ: Ինչպե՞ս եք Դուք գնահատում Լիբանանում և նրա շուրջն այժմ ստեղծվող իրադրությունը:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ամեն օր Լիբանանից ծանր լուրեր են գալիս, որոնք զայրույթ ու ցասում են առաջացնում: Ցասում նրանց նկատմամբ, ովքեր չարագործություններ են կատարում Լիբանանի հողում: Օկուպանտների ձեռքով զոհվել են հազարավոր լիբանանցիներ ու պաղեստինցիներ, իսկ արյունահեղությունը չի դադարեցվել: Ավերվում է Լիբանանի մայրաքաղաք Բեյրութը: Իսրայելի գործողություններն այլ կերպ չի կարելի անվանել, քան ցեղասպանություն:

Ինչո՞ւ է Իսրայելը դեռևս շարունակում իր ավազակային ագրեսիան: Ինչո՞ւ է նա արհամարհում ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի որոշումները, որոնք պահանջում են զավթիչների զորքերը անհապաղ և անպայման դուրս բերել Լիբանանի սահմաններից: Ինչո՞ւ է նա իրեն թույլ տալիս անտեսել համաշխարհային հասարակական կարծիքը: Այդ ամենը տեղի է ունենում, որովհետև նրա թիկունքին կանգնած է այն տերությունը, որի հասցեն քաջ հայտնի է՝ ԱՄՆ-ը:

Մենք Սովետական Միությունում հիանում ենք պաղեստինցիների, բոլոր նրանց արիությամբ, ովքեր համառ դիմադրություն են ցույց տալիս իսրայելական ռազմամոլներին: Որքան էլ բարդ լինի պաղեստինյան պրոբլեմը, ինչպիսի դժվարություններով էլ անցնի պաղեստինյան ժողովուրդը, մի բան պարզ է. պաղեստինյան պրոբլեմը գորդյան հանգույց չէ, այն չես կարող սրով կտրել: Իսկ այն տոկունությունը, որն այդքան ողբերգական հանգամանքներում դրսևորում են պաղեստինցիները, նոր ուժով ապացուցում է, որ նրանք պաշտպանում են կենդանի ժողովրդի կենդանի գործը և անկարելի է նրանց ընկճել:

Այնպես որ կարելի է անել որոշակի հետևություն՝ Իսրայելի ագրեսիան նրա համար դառնում է քաղաքական ու բարոյական խոշոր պարտություն, խորացող մեկուսացում միջազգային ասպարեզում:

Ի դեպ ասած, ավելի ու ավելի մեծ թվով մարդիկ են սկսում հասկանալ դա նաև բուն Իսրայելում:

Աշխարհում ընդլայնվում է նաև այն ըմբռնումը, որ Պաղեստինի արաբ ժողովրդի պրոբլեմի լուծման լավագույն, ռեալիստական ուղին, ինչպես բազմիցս հայտարարել է Սովետական Միությունը, պաղեստինյան պետության ստեղծումն է:

Լիբանանի իրադարձությունները մշտապես գտնվում են սովետական ղեկավարության ուշադրության կենտրոնում: Սովետական Միության դիրքը պարզ է՝ պատերազմի կրակը պետք է հանգցվի, ագրեսիան դադարեցվի, իսրայելական զորքերը պետք է հեռանան Լիբանանի տերիտորիայից:

Կավելացնեմ: Մեր երկիրը օգնություն և աջակցություն է ցույց տվել ու ցույց կտա նրանց, ովքեր գլուխ չեն խոնարհում ագրեսորի առջև, ովքեր ձգտում են հասնել արդարացի կարգավորման և խաղաղության այդ շրջանում:

ՀԱՐՑ: Ձեր կարծիքով, ինչպիսի՞ առաջնահերթ գործողություններ պետք է ձեռնարկել այդ նպատակով:

ՊԱՏԱՍԽԱՆ: Նախ և առաջ անհրաժեշտ է, որ Իսրայելը և ԱՄՆ-ը կատարեն ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի որոշումը Լիբանանի սուվերեն պետության դեմ ագրեսիան դադարեցնելու և իսրայելական զորքերը անհապաղ ու անպայման դուրս բերելու մասին:

Իսկ եթե խոսելու լինենք ամենաառաջնահերթ, ամենաանհետաձգելի հարցի մասին, ապա անհրաժեշտ է վերացնել Բեյրութի պաշարումը իսրայելական զորքերի կողմից: Մենք դեմ չենք, որ իբրև դրա առաջին քայլ միմյանցից հեռացվեն արևմտյան Բեյրութը պաշտպանող ուժերը և իսրայելական զորքերը:

Այդ նպատակներով կարելի կլինի օգտագործել ՄԱԿ-ի ուժերը: Մանավանդ որ ՄԱԿ-ի ժամանակավոր ուժերի կոնտինգենտներն արդեն Լիբանանում են գտնվում անվտանգության խորհրդի որոշմամբ: Իհարկե, մենք այսուհետ ևս կտրականապես հանդես կգանք լիբանանյան հողում ամերիկյան զորքերի երևալու դեմ: Մենք համապատասխան զգուշացում արել ենք:

Ուզում եմ նաև շեշտել՝ որքան համախմբված լինեն Իսրայելի ռազմական արկածախնդրությանը դիմադրող ուժերը, որքան լայն լինի ագրեսիայի սանձահարում պահանջող պետությունների շրջանակը, այնքան արագ և հուսալիորեն վերջ կդրվի դրան:

Ուղղակի ասենք, արդի սուր իրավիճակում վճռական նշանակություն է ստանում արաբների միասնությունը: Իսկ այն, ինչ խանգարում է դրան, մեր խորին համոզմամբ, այս օրհասական պահին պետք է մի կողմ դրվի: Եվ այս իմաստով ավելի ու ավելի ստիպողական ու ակնհայտ է դառնում այն բանի անհրաժեշտությունը, որ արաբները համատեղ որոշեն այն միջոցները, որոնք հարկավոր են ապահովելու պաղեստինցիների՝ ապրելու, անվտանգության, անկախ զարգացման և սեփական պետության ստեղծման իրավունքները:

Եվ վերջինը: Այն, ինչ տեղի է ունենում Լիբանանում, ստիպում է վերըստին հարց տալ՝ արդյոք ժամանակը չէ՞ լրջորեն և ամենայն պատասխանատվությամբ ձեռնամուխ լինելու Մերձավոր Արևելքի դրության արդարացի և համապարփակ կարգավորման գործին:

Ագրեսիայի ակտերի և ռազմական կոնֆլիկտներով հագեցած տասնամյակների տխուր փորձը ցույց է տվել, որ զինված առճակատման ուղին, ինչպես նաև սեպարատ գործարքների ուղին, չի կարգավորել և չի կարող կարգավորել Մերձավոր Արևելքի պրոբլեմները: Դրանք կլուծվեն միայն բոլոր շահագրգռված կողմերի, ներառյալ Պաղեստինի ազատագրման կազմակերպության՝ որպես պաղեստինյան ժողովրդի միակ օրինական ներկայացուցչի, կոլեկտիվ ջանքերով: Նայելով առաջ՝ մենք հենց այդպիսի հեռանկարով ենք տեսնում միջազգային կոնֆերանս գումարելու մեր արած առաջարկության արժեքավորությունը: Եվ որքան շուտ, այնքան լավ: Սովետական Միությունը պատրաստ է գործնականորեն աշխատել այդ ուղղությամբ, լոյալ կերպով համագործակցելով բոլոր նրանց հետ, ովքեր կուզենային իրենց ավանդը ներդնել Մերձավոր Արևելքի կայուն խաղաղության հաստատման գործում:

---

# ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՏՈՆԻՆ ԸՆԴԱՌԱՋ

ԲԱԼԹԻԿԱՅԻՑ ՈՒ ԿԱՐՊԱՏՆԵՐԻՑ մինչև խաղաղական ափերը, Արկտիկայի հեռավոր կղզիներից մինչև Սևան ու միջինասիական տափաստանները ձգվում են աշխարհի ամենախոշոր ու բազմազգ տերության՝ Սովետների մեր մեծ երկրի սահմանները: Թերևս միայն քարտեզի վրա կարելի է հայացքով ընդգրկել այդ վիթխարի մեծությունը: Բայց նույնիսկ քարտեզագրական պայմանականությունները չեն խանգարում, որպեսզի միջօրեականների ու հորիզոնականների՝ բոսորով ներկված քառակուսիները մենք դիտենք ներքին բավականությամբ, դրանցից յուրաքանչյուրում իրականացվող վերափոխությունների ակտիվ մասնակցի օրինական հպարտությամբ:

Միություն ենք կոչել մենք մեր երկիրը՝ արտահայտելով դրանով նոր հասարակարգի կառուցման գործում մեր անխախտ միասնության, անսասան դաշինքի ու եղբայրական համագործակցության կամքն ու ձգտումը: Մենք 270 միլիոն ենք՝ ազգային կազմով խայտաբղետ, բայց սոցիալ-քաղաքական մեր նպատակներով ու գաղափարական հայացքներով միաձույլ մի ամբողջություն, որի էությունը միանգամայն ստույգորեն տրված է «պատմական նոր հանրություն» բնորոշմամբ:

Բազմազգ պետականության ստեղծման ու զարգացման, ազգային հարցի լուծման մեր պատմական փորձը համաշխարհային ճանաչման է արժանացել: «Պատմությունը չգիտե մի այլ պետություն, որը խիստ կարճ ժամկետներում այնքան շատ բան արած լինի ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման համար, ինչպիսին է ՍՍՀՄ-ը՝ մեր բոլոր ժողովուրդների սոցիալիստական հայրենիքը»: ՍՍՀՄ-ի կազմավորման 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման այս տողերն ասես քաղված են մեր երկրի ազգերի ու ազգությունների հավաքական կենսագրությունից. դրանք վերապրած իրողություն են նրանցից յուրաքանչյուրի համար, և յուրաքանչյուրն իր օրինակով, անցած ուղու հանրագումարով կարող է հաստատել նման հետևության իսկությունը:

Այդ ուղին սկիզբ է առնում մեծ Հոկտեմբերից: Կարլ Մարքսը հեղափոխություններն անվանել է պատմության լոկոմոտիվներ: Գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրն այդ խորիմաստ ու պատկերավոր բնորոշմամբ նկատի ուներ ոչ միայն անցյալի հեղափոխությունները, այլև, առավելապես, գալիք սոցիալիստական հեղափոխությունները, այն հիրավի հեղաբեկող դերը, որ դրանք կոչված էին խաղալու հանուր մարդկության կյանքում:

Այդպես էլ եղավ Ռուսաստանում:

Հոկտեմբերյան հեղափոխությունն արմատապես փոխեց մեր երկրի ու նրա բազմազգ ժողովուրդների պատմական ճակատագիրը: Եվ ոչ միայն մեր երկրի: Այսօր, հեղափոխության յոթերորդ տասնամյակում, արդեն ոչ թե որպես կանխագուշակություն, այլ իբրև պատմության իրական փորձից արված հետևություն, մենք ամենայն իրավացիությամբ և ոչ առանց հպարտության զգացումի նշում ենք. Հոկտեմբերի բարերար ազդեցությունից զերծ չմնաց աշխարհի և ոչ մի ժողովուրդ, մեր հեղափոխությամբ սկսվեց ու զարգանում է մարդկային քաղաքակրթության նոր դարագլուխը, այն իրոք դարձավ սոցիալական առաջընթացի հզոր շարժիչը:

Խորհելով մեր անցած ուղու, ասենք՝ հավասարապես և գալիքի մասին,

մենք ամեն անգամ մտովի վերադառնում ենք 1917-ի բախտորոշ իրադարձու-
թյուններին, կրկին ու կրկին իմաստավորում տեղի ունեցածը և, հաճախ նույ-
նիսկ մեզ համար աննկատելի, շարունակում այդ իրադարձությունների տրա-
մաբանական ընթացքը, կողք-կողքի դնում երկրի ու ժողովրդի կյանքում շըր-
ջադարձային կարևորության մյուս տարեթվերը, որոնց շարքում, 1917-ից հե-
տո, ամենանշանակալիցն անշուշտ 1922-ն է՝ Սովետական Սոցիալիստական
Հանրապետությունների Միության կազմավորման տարեթիվը։

Սահմանելով մեր բազմազգ երկրի պետական կառուցվածքի ուրվագծերը,
Վ. Ի. Լենինը 1919 թվականին գրել է. «...Մենք խորապես ինտերնացիոնա-
լիստներ ենք և ձգտում ենք բոլոր ազգերի բանվորների ու գյուղացիների կա-
մավոր դաշինքին» (ԵԼԺ, հ. 38, էջ 230)։ Վլադիմիր Իլյիչի խորին համոզմամբ,
նման դաշինքը կարող էր ստեղծվել միայն ու միայն նրա բոլոր մասնակից-
ների իրավահավասարության ու փոխադարձ հարգանքի հիման վրա։ «Մենք
ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ոչ մի բըռ-
նություն չհանդուրժեր մի ազգի կողմից մյուսի նկատմամբ, այնպիսի միու-
թյուն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական
միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության
վրա» (Երկեր, հ. 30, էջ 368)։ Հոկտեմբերի հաղթանակով, արտադրամիջոցների
նկատմամբ հանրային սեփականության հաստատմամբ, անցյալում ճնշված
ժողովուրդների կողմից իրենց պետականության ձեռքբերմամբ լենինյան ազ-
գային քաղաքականության այդ հիմնարար սկզբունքներն իրականություն դար-
ձան և հետևողականորեն արմատավորվեցին երկրի պետական, քաղաքական
ու տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում։

Սովետական բոլոր ժողովուրդներին միասնական պետության մեջ միա-
վորելու անհրաժեշտությունը թելադրվում էր հասարակական զարգացման օբ-
յեկտիվ ընթացքով, նոր հասարակարգի կառուցման խնդիրներով, Հոկտեմբերի
նվաճումները իմպերիալիզմի ոտնձգություններից հուսալիորեն պաշտպանելու
շահերով։ Եվ կուսակցությունը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ վիթխարի աշ-
խատանք ծավալեց այդ խնդրի լուծման նպատակով։ Միութենական պետու-
թյան ստեղծման գործում վճռական դեր խաղաց ՌՍՖՍՀ-ն, որի շուրջը կամա-
վոր հիմունքներով համախմբվեցին բոլոր միութենական հանրապետություն-
ները։ Լինելով առաջին բազմազգ պետությունը, Ռուսաստանյան Ֆեդերացիան
դարձավ ՍՍՀՄ-ի նախատիպը, իսկ ռուս ժողովուրդը, հավատարիմ իր ինտեր-
նացիոնալ պարտքին, ազգային ծայրամասերին անշահախնդիր օգնության
հիրավի աննախադեպ օրինակ ցույց տվեց։

Իրականացնելով լենինյան իմաստուն ազգային քաղաքականությունը,
ՍՄԿԿ-ն պատմական կարճ ժամանակամիջոցում կարողացավ նախկինում հե-
տամնաց ազգային ծայրամասերի համար կենտրոնական շրջանների համեմատ
առավել նպաստավոր պայմաններ ապահովել ոչ միայն տնտեսության, այլև
կուլտուրայի բնագավառներում նրանց ետ մնալը հաղթահարելու, զարգաց-
ման մակարդակով ավելի բարձր աստիճանի վրա գտնվող ժողովուրդներին
հասնելու համար։

«Սովետների երկրի ժողովուրդները,— ասված է ՍՍՀՄ կազմավորման
60-ամյակի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— սեփական փորձով
համոզվեցին. միասնական միության մեջ համախմբվելը բազմապատկում է
իրենց ուժերը, արագացնում սոցիալ-տնտեսական զարգացումը։ Մենք իրա-
վունք ունենք հպարտանալու, որ երկրի բոլոր ազգերի աշխատավորների հետ
ընդհանուր շարքում նախկին ազգային ծայրամասերի ժողովուրդները, որոնք
առաջներում դատապարտված էին դարավոր հետամնացության, վստահորեն
քայլեցին դեպի սոցիալիստական գալիքը, շրջանցելով կապիտալիզմի փուլը
և հասան սոցիալական առաջընթացի բարձունքներին»։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պատ-
մությունը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների միասնության և բարե-
կամության ամրապնդման, նրանց առնականացման, տնտեսական, քաղաքա-
կան ու կուլտուրական զարգացման, մեր բազմազգ սոցիալիստական պետու-



թյան բարգավաճման, նրա հզորության ամրապնդման պատմությունն է։ Ինչ-
պես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, իր փառապանծ տարեդարձին
«Սովետական Միությունն ամբողջ աշխարհի առջև հանդես է գալիս որպես
համատեղ կոմունիզմ կառուցող իրավահավասար հանրապետությունների հա-
մերաշխ ընտանիք»։

Որդեգրելով մեծ Հոկտեմբերի գաղափարները, հանդես գալով իբրև
ՍՍՀՄ-ը կազմավորող ազգերից մեկը, հայ ժողովուրդը իրավահավասար հան-
րապետությունների այդ համերաշխ ընտանիքում բարգավաճման լայն հնարա-
վորություններ ստացավ և ահա արդեն վեց տասնամյակից ավելի ստեղծա-
գործ աշխատանքով արժանի ավանդ է ներդնում մեր սոցիալիստական հայ-
րենիքի հզորության ամրապնդման, նրա տնտեսական ու կուլտուրական վե-
րելքի գործում։ Ազգերի սոցիալիստական համագործակցության հրաշագործ
ուժի մասին մենք սեփական փորձից գիտենք։ Անցյալից մեր ժողովուրդը խիստ
աղքատիկ ժառանգություն ստացավ։ Նոր կյանքի կառուցումը նա սկսեց անա-
սելիորեն ծանր պայմաններում, աներևակայելի դժվարությունները հաղ-
թահարելու աներեր վճռականությամբ, քանզի ապավինել էր հզոր ու հու-
սալի ուժի՝ Սովետական Ռուսաստանին, և ստացել իր ունակություններն ու
կարողությունները զարգացնելու և գործադրելու իրական հնարավորություններ։

Սովետական Հայաստանը, ինչպես և եղբայրական ամեն մի այլ հանրա-
պետություն, ազգային հարցի լուծման հեղինակային իրավունքի վկայագիր
կարող է ծառայել ՍՍՀ Միության համար։

Իր պանծալի հոբելյանը սովետական ժողովուրդը դիմավորում է ՍՄԿԿ
XXVI համագումարի կանխագծումների, տասնմեկերորդ հնգամյակի պլանների
իրականացման ասպարեզում ձեռք բերած նոր հաջողություններով։ Կատար-
վում է համագումարի ընդունած սոցիալական զարգացման և ժողովրդի կեն-
սամակարդակի բարձրացման ծրագիրը։

Տնտեսական զարգացման ներկա փուլին բնորոշ է ազգերի ու ազգություն-
ների առավել ընդլայնվող համագործակցությունը, նոր խնդիրների մասշտաբ-
ներին համապատասխան այդ համագործակցության եղանակների կատարելա-
գործումը։ Սովետական հանրապետությունների վերելքին, հետևաբար և կո-
մունիստական շինարարության գործում նրանց ավանդի մեծացմանը էապես
նպաստում է խոշոր տերիտորիալ-արտադրական համալիրների ստեղծումը,
ընդհանուր միութենական ժողովրդատնտեսական այնպիսի խնդիրների լուծու-
մը, ինչպիսիք են Սիբիրի, Հեռավոր Արևելքի, Հյուսիսի շրջանների և ԲԱՄ-ի
գոտու ջերմաէներգետիկ ու հումքային ռեսուրսների յուրացումը։ Երկրի ար-
տադրողական ուժերի արագ զարգացման իմաստով առանձնահատուկ կարևո-
րություն է տրվում ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտուն, որն ընդգրկում է 29 մար-
զեր ու ինքնավար հանրապետություններ։ Այդ գոտու վերափոխման՝ կուսակ-
ցության մշակած ծրագրի իրականացմանը, ինչպես և միութենական նշանա-
կության խոշորագույն օբյեկտների շինարարությանն ամենագործուն կերպով
մասնակցում են նաև Հայաստանի շինարարների ու մոնտաժողների հարյու-
րավոր բրիգադներ, ուսանողական ջոկատներ։ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկա-
մության պերճախոս հուշակոթողներ են Արփա—Սևան ջրատարն ու Երևանի
մետրոպոլիտենը, այդ բարեկամության անջնջելի դրոշմը կա մեր հանրապե-
տության շատ թե քիչ աչքի ընկնող ամեն մի կառույցի վրա։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում ՍՍՀՄ ժողովուրդների բարեկա-
մությունը խարսխվում է տնտեսական հզոր բազայի վրա։ Հանրապետություն-
ների տնտեսական ու կուլտուրական զարգացման պայմանների հավասարեց-
ման շնորհիվ երկրի բոլոր ժողովուրդները փոխադարձորեն միմյանց օգնելու
հնարավորություն ստացան, նրանց համագործակցությունն այժմ շատ ավելի
լայն ու համակողմանի բնույթ է կրում, քան անցյալում։ Երկրի միասնական
ժողովրդատնտեսական կոմպլեքսի ձևավորումն ու նրա կատարելագործումը
էապես ընդլայնեցին ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների բարեկամության նյու-
թական հիմքերը։

Ընդամենը չորս ամիս է բաժանում մեզ պանծալի հոբելյանից։ Ինչպես

ամբողջ երկրի, այնպես էլ մեր հանրապետության աշխատանքային կոլեկտիվները սոցիալիստական գործարար մրցություն են ծավալել մնացած կարճ ժամանակաշրջանն առավել արդյունավետությամբ օգտագործելու, համաժողովրդական տոնի առթիվ ստանձնած պարտավորություններն անթերի կատարելու համար։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները հաջողությամբ ավարտեցին հոբելյանական տարվա առաջին կիսամյակը, երկիրը հայաստանյան մակնիշով տասնյակ միլիոնավոր ռուբլու լրացուցիչ արտադրանք ստացավ։ Նախնական տվյալները վկայում են, որ տարին արժանավայել ցուցանիշներով կփակեն նաև հողագործներն ու անասնապահները։

Քիչ չեն արտադրությունն ինտենսիվացնելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու ասպարեզում ձեռք բերած հաջողությունները։ Հանրապետության կուսակցական ու տնտեսական կազմակերպությունները ընդօրինակման արժանի փորձ են կուտակել արտադրանքի որակի հետևողական բարելավման բնագավառում։ Մեծ ծավալի աշխատանքներ են կատարվում ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման, արտադրության համակենտրոնացման և մասնագիտացման, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի, որակի կառավարման համակարգերի արմատավորման նպատակով։

Նախահոբելյանական մրցությունը կառավարման մեխանիզմի կատարելագործմանն ու նրա արդյունավետության բարձրացմանը, արտադրության հարցերի կոմպլեքսային լուծմանը ի սպաս դնելու լավ օրինակ են տալիս «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումը, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը, Լենինականի տեքստիլ կոմբինատը, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանը, Հրազդանի ՊՇԷԿ-ը և այլն։

Ներկա, ինչպես և գալիք տևական ժամանակաշրջանի մեր աշխատանքի բովանդակությունը մեծապես պայմանավորվում է ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների, նրա ընդունած ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացման նպատակով ծավալված գործունեությամբ։ Այդ ծրագիրն առաջիկա տասնամյակում կուսակցության տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է, և գործի հաջողությունը մեծ չափով որոշվում է նրանով, թե կուսակցական կազմակերպություններն ու տնտեսական մարմինները որքան օպերատիվ ու բանիմաց կերպով կմոբիլիզացնեն բոլոր ռեզերվներն ու միջոցները՝ դրա կատարումն ապահովելու համար։

Պարենային ծրագրում հստակորեն ու համակողմանի սահմանված են նաև դրա իրականացման ասպարեզում միութենական հանրապետությունների խնդիրները։ Անդրադառնալով այդ հարցին, ՀԿԿ Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումը հանգամանորեն վերլուծեց հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման արդյունքները, բացահայտեց դրա հետագա վերելքի ուղղությունները, նշեց պարենային պրոբլեմի լուծման ասպարեզում հանրապետության կուսակցական ու տնտեսական կազմակերպությունների, ողջ աշխատավորության անելիքները։

Հանրապետության պարենային ծրագիրը մշակվել է գյուղատնտեսական ընդհանուր միութենական մասնագիտացման պահանջներից ելնելով, այն ՍՍՀՄ պարենային ծրագրի բաղկացուցիչ մասն է և օրգանապես մտնում է հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման տասնմեկերորդ հնգամյակի ու մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի պլանի մեջ։

Վերջին տարիներին հանրապետության գյուղատնտեսական արտադրության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները լավ նախադրյալ են ստեղծում պարենային ծրագրի իրագործումն ապահովելու համար։ Գործի շահերը պահանջում են, որպեսզի այդ նախադրյալները հմտորեն զուգակցվեն գյուղատնտեսական արտադրության կազմակերպման ու կառավարման կատարելագործման, նրա ինտենսիվացման, հողային ու ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործման, գիտության հասումների արմատավորման հետ։

Մեր գյուղատնտեսության և նրա հետ կապված ժողովրդատնտեսական մյուս ճյուղերի առջև իրենց մասշտաբներով, ընդգրկմամբ ու նպատակադրումներով նոր խնդիրներ են դրվում։ Կուսակցական կազմակերպություններն ու



գյուղատնտեսական մարմինները պետք է հասնեն այն բանին, որ ամեն մի քաղաք, շրջան, գյուղ, ձեռնարկություն ու տնտեսություն հստակորեն պատկերացնի այդ խնդիրների լուծման գործում իր անելիքները, հետևողական պայքար ծավալի դրանց իրականացման համար։ Պարենային ծրագիրը, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, արդեն ընթացիկ տարում պետք է տա իր առաջին պտուղները։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակը արժանավայել դիմավորելու համար ծավալված համաժողովրդական պայքարն ամենուրեք նպատակամղվում է մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը, կուսակցության XXVI համագումարի պատմական որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1981 թ.) և մայիսյան (1982 թ.) պլենումներում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած խնդիրների կենսագործմանը։ Այդ պայքարում բազմաթիվ նոր արժեքավոր նախաձեռնություններ են ծնվում, մասսաների հետ տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի զինանոցը հարստանում է նոր միջոցներով ու եղանակներով։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը որոշում ընդունեց «ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նախապատրաստվելու առնչությամբ Վրացական ՍՍՀ-ի կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մասին»։ Արժեքավորելով այն ողջ առաջավորը և ուսանելին, ինչ մեր համազգային տոնին նախապատրաստվելու ընթացքում ձեռք են բերել եղբայրական Վրաստանի կուսկազմակերպությունները, ՍՄԿԿ Կենտկոմը միաժամանակ հանրապետության կոմունիստների ուշադրությունը հրավիրում է այն խնդիրների վրա, որոնց լուծմամբ կուսկազմակերպությունների ծավալած քաղաքական ու կազմակերպչական աշխատանքն ավելի մեծ արդյունքներ կտա։

Ինչպես նշվում է որոշման մեջ, վերջին տարիներին հանրապետությունում ավելի ու ավելի է հաստատվում քաղաքական, սոցիալական ու տնտեսական պրոբլեմների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման պրակտիկան։ Աճել է կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, պրոտեկցիոնիզմի վնասակար ավանդույթների, մասնավոր սեփականատիրական միտումների և սոցիալիստական ապրելակերպի նորմերից կատարվող մյուս նահանջների դեմ մղվող անզիջում պայքարը նպաստում է աշխատավորական կոլեկտիվներում բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի ստեղծմանը, մասսաների նախաձեռնության ու ակտիվության զարգացմանը։ Հոբելյանին նախապատրաստվելու ընթացքում հարստացել է Վրաստանի կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքի պրակտիկան, բարձրանում է ղեկավար կադրերի պատասխանատվությունը դաստիարակչական աշխատանքի վիճակի համար։

Նշելով, որ ձեռք բերված արդյունքները պայմանավորված են հանրապետության կուսակցական կազմակերպության ղեկավարման մակարդակի բարձրացմամբ, աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործմամբ, մասսաների հետ կապի ամրապնդմամբ, ՍՄԿԿ Կենտկոմը Վրաստանի կոմունիստների ուշադրությունը հրավիրում է արտադրության հետագա ինտենսիվացման, հանրապետության արտադրողական ուժերի զարգացման առկա մեծ հնարավորությունների առավել արդյունավետ օգտագործման, գաղափարադաստիարակչական աշխատանքի հրատապության ապահովման, տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական գործունեության մի շարք այլ հարցերի լուծման վրա։

Համակուսակցական կարևորության այս փաստաթղթում պարունակված դրույթներն ու հանձնարարականները ուշի-ուշով ուսումնասիրելը, յուրաքանչյուր կոնկրետ դեպքում դրանք ստեղծագործորեն կիրառելն անպայման կհարստացնի կուսակցական կազմակերպությունների գործունեությունը, կբարձրացնի հոբելյանին նախապատրաստվելու նպատակով նրանց ծավալած աշխատանքի արդյունավետությունը։

Կուսակցական աշխատանքի պրակտիկան համոզիչ կերպով ցույց է տա-

լիս, որ ծառացած խնդիրների լուծումը տասնապատիկ անգամ ավելի հեշտ է ձեռք բերվում, երբ դրան հմտորեն ի սպաս է դրվում մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը։ Կարողանալ առանձնացնել գլխավորը, դրա վրա կենտրոնացնել կոլեկտիվի ուշադրությունն ու ջանքերը, գտնել այս կամ այն խնդրի լուծման ամենակարճ ու արդյունավետ ուղին՝ ահա թե մեծապես ինչով է պայմանավորված նախատոնական մրցության հաջողությունը։

Հարցերի հարցը մնում է արտադրության ինտենսիֆիկացումը, այն ամենի արդյունավետ ու խնայողական օգտագործումը, ինչ մենք ունենք, աշխատանքի որակի բարձրացումը, պլանային առաջադրանքների ու ստանձնած պարտավորությունների անթերի կենսագործումը։ Մեծ են ուղղակի և անուղղակի կորուստները, որ մենք կրում ենք կատարողական կարգապահության ցածր մակարդակի հետևանքով։ Ձեռնարկություններում, սովխոզներում ու կոլտնտեսություններում, զանազան այլ հաստատություններում բնավ միշտ չէ, որ մենք ջանում ենք հասնել տվյալ ճյուղում աշխատանքի կազմակերպման՝ երկրում արդեն ձեռք բերված մակարդակին։ Այս և նման բնույթի այլ հարցեր, որոնք էապես պայմանավորում են մեր աշխատանքի որակն ու կուլտուրան, մեր կազմակերպվածության աստիճանը, պետք է մշտապես լինեն կուսակցական ու հասարակական կազմակերպությունների և տնտեսական մարմինների տեսադաշտում, ժամանակին ստանան իրենց լուծումը։

Որոշակի հոբելյանական երանգ է ստացել մեր ողջ գաղափարախոսական աշխատանքը։ Ղեկավարվելով ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին Կենտկոմի որոշման այն պահանջով, թե հոբելյանի նախապատրաստությունը պետք է նպաստի աշխատավորների գաղափարաքաղաքական, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությանը, հանրապետության կուսակցական կազմակերպությունները պրոպագանդիստական, ագիտացիոն-մասսայական աշխատանքում կարևորում են հատկապես գաղափարական ազդեցության այն միջոցները, եղանակներն ու գործոնները, որոնք առավել արդյունավետությամբ են ծառայում այդ խնդրի լուծմանը։ Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման, լենինյան ազգային քաղաքականության իրականացման, ազգերի և ազգությունների բազմակողմանի առաջընթացի ու մերձեցման գործում կոմունիստական կուսակցության դերի պարզաբանմանը, սոցիալ-քաղաքական, տնտեսական և ազգային ամենաբարդ պրոբլեմների լուծման ասպարեզում սոցիալիզմի պատմական նվաճումների բացահայտմանը, եղբայրական հանրապետությունների հաջողությունների լուսաբանմանը։

Հոբելյանի նախապատրաստության ողջ ընթացքի գաղափարախոսական ապահովմանն իրենց նկատելի ավանդն են բերում գիտության, մշակույթի հիմնարկությունները, ստեղծագործական միությունները ու կազմակերպությունները։ Հաջողությամբ են անցնում ժողովուրդների եղբայրական բարեկամության ամրապնդման այնպիսի արդյունավետ միջոցառումները, ինչպիսիք են միութենական հանրապետությունների օրերն ու փառատոները։ Հոբելյանական թեմատիկան պարբերաբար լուսաբանվում է մասսայական ինֆորմացիայի միջոցներով։

Արժեքավորելով ձեռք բերված հաջողությունները, գնահատելով դրանք հոբելյանական տարվա խիստ չափանիշներով, չի կարելի միաժամանակ չնշել, որ գաղափարախոսական ոլորտի վիթխարի հնարավորությունները դեռևս մինչև վերջ ի սպաս չեն դրվում մեր կենսագործունեության ամենատարբեր ոլորտներում նկատվող թերությունների ու վրիպումների հաղթահարմանը, սոցիալիստական հասարակությանը խորթ բարքերի, նեգատիվ երևույթների վերացմանը, որոնք խոչընդոտում են մեր առաջընթացը։

Սովետական ժողովուրդը ուժեղ է իր լենինյան բարեկամությամբ։ Այդ բարեկամությունը մեր համազգային հարստությունն է և նրա հետագա ամրապնդումը մեզանից յուրաքանչյուրի սրբազան պարտքն է։ Գալիքի նկատմամբ պայծառ հավատով, հարազատ կուսակցության կանխագծումների իրականացման գործում ձեռք բերած տպավորիչ հաղթանակներով է սովետական ժողովուրդը դիմավորում իր պանծալի հոբելյանը։

---



# ՍՏՐԱՏԵԳԻԱԿԱՆ ԽՆԴՐԻ ԼՈՒԾՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՕՂԱԿԸ

**Հ. Վ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ**
Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր

ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ Է ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1982 թվականի մայիսյան պլենումի ընդունած «Մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և նրա իրականացման միջոցառումների մասին» որոշումը, որի նպատակն է ըստ հնարավորին կարճ ժամկետներում երկրի բնակչությանը հուսալիորեն ապահովել սննդամթերքներով։ Պլենումում տված իր զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ դա ո՛չ միայն առաջնահերթ տնտեսական, այլև հրատապ սոցիալ-քաղաքական խնդիր է։ Սովետական մարդկանց կենսական պահանջմունքների բավարարումը, շեշտված է զեկուցման մեջ, եղել և մնում է մեր կուսակցության կարևորագույն ծրագրային պահանջը։

Կուսակցության մշակած պարենային ծրագիրը սահմանում է, որ պրոբլեմի գլխավոր օղակը, նրա արմատական լուծման ելակետային հիմքը գյուղատնտեսությունն է, որի նյութատեխնիկական բազայի դինամիկ զարգացումն ու ամրապնդումը եղել են ու այսուհետ ևս կլինեն կուսակցության և կառավարության կարևորագույն խնդիրներից մեկը։

ՍՍՀՄ պարենային ծրագրով նախատեսված է մեր հանրապետությունում խաղողի տարեկան միջին արտադրությունը տասնմեկերորդ հնգամյակում հասցնել 240—260 հազար, իսկ տասներկուերորդում՝ 310—330 հազար տոննայի, հացահատիկինը՝ համապատասխանաբար 310 հազար և 320—340 հազար տոննայի։

Տասնամյակի ընթացքում բանջարեղենի և բոստանային կուլտուրաների արտադրությունը կավելանա 1,2 անգամ, պտուղներինը և հատապտուղներինը՝ 1,7, կերի բոլոր տեսակներինը՝ 1,4 անգամ։ Շահագործման կհանձնվեն առնվազն 60 հազար հեկտար ոռոգելի հողեր և կջրարբիացվեն 120 հազար հեկտար արոտավայրեր։

Տասնմեկերորդ հնգամյակում մսի միջին տարեկան արտադրությունը (սպանդային քաշով) պետք է հասցնել 95 հազար, տասներկուերորդ հնգամյակում՝ 120—122 հազար տոննայի, կաթինը՝ համապատասխանաբար՝ 520 հազար և 570—590 հազար տոննայի։ Հատուկ ուշադրություն կդարձվի անասունների և թռչնի մթերատվության բարձրացմանը։

Այս ծրագիրը միանգամայն ռեալ է և այն կատարելու, նույնիսկ գերակատարելու համար առկա են բոլոր նախադրյալներն ու հնարավորությունները։ Դրանք ստեղծվեցին տասներորդ հնգամյակում և առաջին արդյունքներն ակնհայտ դարձան 1981 թվականին։ 1978 թ. հանրապետությունն առաջին անգամ նվաճեց հեկտարից 20 ցենտներ հացահատիկ ստանալու բնագիծը և այն

1981 թ. հասցրեց ավելի քան 23 ցենտների։ Առաջին անգամ վաճառվեց 335 հազար տոննա խաղող, մթերման հանձնվող տավարի միջին քաշը գերազանցեց 300 կիլոգրամի, իսկ մեկ կովի կաթնատվությունը՝ 2.000 կիլոգրամի սահմանը։ Վերջապես կուտակվեց կերի մեկ և կես տարվա պաշար, կենդանիների ձմեռումն անցավ անկորուստ։

ՀԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա հունիսյան պլենումում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ, պլենումի մյուս նյութերում բացահայտվեցին այն հիմնական նախադրյալներն ու ռեզերվները, որոնց գործադրմամբ կապահովվի պարենային ծրագրի կատարումը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության կառավարության հանձնարարությամբ մշակվել են պարենային ծրագրի կատարումը և գերակատարումն ապահովող կոնկրետ միջոցառումներ, որոնք հաստատվել ու գործողության մեջ են դրվել։ Այդ գործնական, նպատակասլաց միջոցառումները կազմվել են գիտահետազոտական ինստիտուտների, շրջանների և տնտեսությունների ղեկավարների, մասնագետների մասնակցությամբ՝ ելնելով յուրաքանչյուր շրջանի պայմաններից ու հնարավորություններից։ Դրանցում նախատեսված են շրջանների գյուղատնտեսական արտադրության յուրաքանչյուր ճյուղի զարգացման հեռանկարները և դրա համար անհրաժեշտ հողային, ոռոգման պայմանների ստեղծումը, նյութատեխնիկական միջոցների հատկացումը։ Այսօր ո՛չ միայն շրջանները, այլև ամեն կոլտնտեսություն, սովխոզ, գյուղատնտեսական ձեռնարկություն իր տրամադրության տակ ունի հողերի՝ գիտականորեն մշակված ագրոքիմիական քարտեզ։ Այսուհետև մենք ավելի ևս պետք է շեշտը դնենք գյուղատնտեսական արտադրությունը գիտականորեն վարելու վրա։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը դատապարտեց գյուղատնտեսական կուլտուրաների փոփոխման, դրանց մշակության, բերքահավաքի գործում նկատվող կամայականությունը։ Ծրագրում հանգամանորեն նշված են նաև յուրաքանչյուր գոտու, շրջանի անասնապահության հետագա զարգացման և մթերքների արտադրության ավելացման ուղիները։

Այդ ամենը կյանքի կոչելու համար մեր կոլտնտեսություններում ու պետական տնտեսություններում կան հմուտ ղեկավարներ ու մասնագետներ, հողագործներ ու այգեգործներ, անասնապահներ ու անասնաբույժներ։ Այժմ հանրապետության յուրաքանչյուր կոլտնտեսությունում, միջին հաշվով, աշխատում է բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 13 մասնագետ։

Ինչպես նշված է պարենային ծրագրում, տասներկուերորդ հնգամյակում հանրապետությունում հացահատիկի արտադրությունը պետք է հասցվի 320—340 հազար տոննայի։ Ելնելով արդեն ձեռք բերված մակարդակից, վստահորեն կարելի է ասել, որ այդ քանակությամբ հացահատիկի արտադրությունը ո՛չ միայն կապահովվի, այլև կգերակատարվի։ Հացահատիկի արտադրության տարեկան 300—308 հազար տոննա բնագծին հանրապետությունն արդեն հասավ տասներորդ հնգամյակում, իսկ անցյալ տարի արտադրվեց 310 հազար տոննա։ Դա արդեն այնքան է, որքան ծրագրով նախատեսված է ընթացիկ հնգամյակի համար։

Այստեղ ոչ մի պատահականություն չկա։ Տարիներ ի վեր առկա էին հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման համար անհրաժեշտ պայմաններ։ Սակայն հանրապետությունում հացահատիկի դաշտերի մեծ մասում ցանքը կատարվում էր ոչ տեսակավոր սերմացուով։ Ստեղծվել էր յուրահատուկ հոգեբանական պատնեշ, մարդիկ կարծես հաշտվել էին այդ իրավիճակի հետ։ Հանրապետությունում հացահատիկի միջին բերքատվությունը յոթերորդ հնգամյակում եղել է 9,5 ցենտներ, ութերորդում՝ 12, իններորդում՝ 15,6 ցենտներ։ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարն անհանդուրժելի համարեց հացահատիկային կուլտուրաների բերքատվության ցածր մակարդակը։ ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն և հանրապետության Մինիստրների խորհուրդը կոնկրետ միջոցառումներ մշակեցին այդ հարցի արմատական լուծման համար։ Նախ և առաջ վերջ տրվեց բազմասորտայնությանը, շուրջ մեկ և կես տասնյակ սորտերից մշակության համար ընտրվեց 5—6-ը՝ ըստ գոտիների։



Այնուհետև, բարելավելով սերմնաբուծության դրվածքը, ամենուրեք սկսեցին օգտագործել միայն առաջին և երկրորդ դասի սերմացու։ Որպես կանոն, նախացանքային վարը սկսեցին կատարել պարարտացման առկայության դեպքում միայն։

Պարենային ծրագրի կատարումն ապահովելու միջոցառումներում մանրամասն նախատեսված է, թե ըստ գոտիների ու շրջանների հացահատիկային կուլտուրաների ինչ սորտեր, ինչպիսի ագրոտեխնիկայով պետք է մշակվեն, որպեսզի հանրապետությունը 1985 թվականին հեկտարից ապահովի ոռոգելի հողերում 40 ցենտներ, իսկ անջրդի պայմաններում՝ 27 ցենտներ միջին բերք։ ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը հանրապետության հողագործների առջև խնդիր դրեց հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հասցնել միջին հաշվով հեկտարից 30—35 ցենտների, որը հնարավորություն կընձեռի տարեկան լրացուցիչ ստանալու 120—150 հազար տոննա հացահատիկ։

Սրանք միջին բերքատվության առաջադրանքներն են՝ միանգամայն ռեալ ու հիմնավոր։ Չէ որ Արթիկի, Անիի, Կալինինոյի, Շամշադինի և մյուս շրջանների շատ տնտեսություններ, նույնիսկ անջրդի պայմաններում, հեկտարից 30—35 ցենտներ հացահատիկ են ստանում։ Անիի շրջանի Մարալիկի կոլտնտեսությունը, որի նախագահն է սոցիալիստական աշխատանքի հերոս Ս. Նազարյանը, անցյալ տարի, օրինակ, անջրդի պայմաններում, հեկտարի բերքատվությունը հասցրեց նույնիսկ 42 ցենտների։ Նույն շրջանի Սարակապի կոլտնտեսությունում, նույնպես անջրդի պայմաններում, տասներորդ հնգամյակում տարեկան միջին բերքը հեկտարից կազմեց 33,5 ցենտներ։

Այսպիսի օրինակներ կարելի է շատ բերել։ Բնականաբար, հարց է ծագում, իսկ ինչո՞ւ դեռևս մեծ թվով տնտեսություններում և նույնիսկ շրջաններում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը ծայրաստիճան ցածր է և հեկտարից 8, 10, 12 ցենտներից չի անցնում։ Պարզ է, որ դրանցում ցածր է երկրագործության կուլտուրան, իսկ շրջանների, տնտեսությունների ղեկավարներն իրենց պատասխանատու չեն զգում հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման համար, խախտում են ագրոտեխնիկական շատ կանոններ։ Մինչդեռ այդ շրջաններում ևս առկա են բարձր բերք աճեցնելու բոլոր պայմաններն ու հնարավորությունները՝ անհրաժեշտ տեխնիկա, պարարտանյութեր, բարձրորակ սերմացու։

Հազիվ թե հարկ կա ապացուցելու, որ եթե ցածր բերք ստացող տնտեսությունները հավասարվեին մյուսներին, ապա հենց միայն դա բավական կլիներ հացահատիկի արտադրության տասնմեկերորդ հնգամյակի համար նախատեսված մակարդակը զգալիորեն գերազանցելու համար։ Հացահատիկի արտադրությունը պետք է ավելացվի միայն և միայն բերքատվության բարձրացման հաշվին, առանց ցանքատարածությունների ընդարձակման։ Ահա պարենային ծրագրի կատարման ու գերակատարման մի խոշոր ռեզերվ։

Մեր հանրապետության համար սահմանված է բանջարեղենի տարեկան արտադրության 400—430 հազար տոննայի բնագիծ։ Հանրապետությունն անցած հնգամյակում արդեն գերազանցեց 400 հազար տոննայի բնագիծը։ Մեր բանջարաբուծական առաջավոր օղակները, բրիգադները, նույնիսկ ամբողջ տնտեսություններն հեկտարից սիստեմատիկաբար 500, 600, նույնիսկ 800 ցենտներ բերք են ապահովում։ Եվ այս փորձի ընդհանրացումը բավական կլինի, որ ողջ հանրապետությունում բանջարեղենի հեկտարի ներկայիս բերքը կրկնապատկվի։ Մինչդեռ այսօրվա միջին բերքատվությունը բարձր չէ, անցած հնգամյակում այն կազմեց 244 ցենտներ։

Նախատեսված է այս հնգամյակում բարձրացնել բանջարաբուծության մշակության մեքենայացման մակարդակը։ Ապացուցված է, օրինակ, որ մեքենայական բերքահավաքին հարմարեցված պոմիդորի սորտերի մշակման և բերքահավաքի մեքենայացման շնորհիվ հեկտարից ապահովվում է 500—600 ցենտներ բերք։ Իսկ պոմիդորի մեքենայական մշակության ու բերքահավաքի փորձեր մենք ունենք։ Առաջիկա 5—6 տարում Արարատյան դաշտում կարելի է մեքենայական եղանակով այդ կուլտուրայի մշակմանը և բերքահավաքին հատկացնել մինչև 3.000 հեկտար հող։ Դա նշանակում է ստանալ և արդյու-

նաբերությունը հանձնել 140—150 հազար տոննա պոմիդոր, այսինքն այնքան, որքան այժմ հանձնվում է դրա համար հատկացված ամբողջ տարածություններից։ Ընթացիկ հնգամյակում բանջարաբուծության բնագավառում կարևոր խնդիր է որակի պահպանման և ըստ տեսակների արտադրության ապահովումը։

Այգեգործության մասին։ Մեր հանրապետության գյուղատնտեսության խոշոր ճյուղերից է այն, որի զարգացման համար մեծ ծրագիր է նախատեսված։ Դեռ ոչ հեռու անցյալում այգեգործությունը ետին պլան էր մղված։ Այգեգործության մեջ ստեղծված վիճակի վրա հանրապետության կուսակցական կազմակերպության ուշադրությունը հրավիրեց Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը։ Բավական է ասել, որ հանրապետությունում երեք հնգամյակ շարունակ խաղողի բերքատվությունը հեկտարից 57—58, իսկ պտղինը՝ 38—39 ցենտներից չէր անցնում։

Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը նշեց այգեգործությունը այդ վիճակից դուրս բերելու ուղիները՝ այգիների տարածությունների ընդարձակում, նոսրության վերացում և այգեգործության կուլտուրայի շեշտակի բարձրացում։ Մեր այգեգործները, պայքարելով այդ նշանաբանով, արդեն հասել են շոշափելի արդյունքների։ Այժմ արդեն ունենք ինտենսիվ մշակության 200, 300, 500, 800 հեկտարանոց խաղողի և պտղատու այգիներ, որոնց յուրաքանչյուր հեկտարից կստացվի 150—200 ցենտներ խաղող, 250 և ավելի ցենտներ պտուղ։ Տասներորդ հնգամյակի տարիներին խաղողի տարեկան համախառն արտադրանքը հասավ 226 հազար տոննայի, իսկ անցյալ տարի արտադրվեց 361 հազար տոննա խաղող։ Հեկտարի բերքատվությունը կազմեց 108 ցենտներ, այսինքն ընդամենը 5—6 տարում այն կրկնապատկվեց։

Պարենային ծրագրի հաջող կենսագործման համար ընթացիկ և տասներկուերորդ հնգամյակներում պետք է ստեղծվեն խաղողի և պտղի այգիների խոշոր զանգվածներ՝ գլխավորապես Ախուրյանի, Ջողազի, Ազատի և Եղվարդի ջրամբարների տակ գտնվող նոր յուրացվող, ինչպես նաև Արարատյան դաշտի աղազերծված հողերում։ Դրանցում մշակվելու են խաղողի և պտղի միայն բարձր բերքատու սորտեր։

Հենվելով ինտենսիվ այգեգործության ներկայիս մակարդակի վրա և ելնելով հանրապետության առաջավոր այգեգործական տնտեսությունների փորձից, կարելի է վստահորեն ասել, որ Հայաստանի հողը ի վիճակի է կրկնապատիկ, եռապատիկ բարձր բերք տալ, քան ստացվում էր մինչև հիմա։ Այդ են ապացուցում մեր առաջավոր տնտեսությունները, բրիգադները, օղակները։

Անցյալ տարի հեկտարից արդեն 400 ցենտներ խաղողի բերք ստացան Արարատի շրջանի Վանաշեն գյուղի խաղողագործները։ Իսկ նույն տնտեսության Վ. Խալաթյանի գլխավորած բրիգադը հեկտարից ստացավ 422 ցենտներ բերք։ Հեկտարից 416 ցենտներ խաղող հավաքեց նույն շրջանի Մեծ Վեդի գյուղի կոլտնտեսության Ա. Մկրտչյանի բրիգադը։ Հեկտարից 220—250 ցենտներ խաղող ստացան Էջմիածնի, Արտաշատի, Հոկտեմբերյանի շրջանների մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ։

Հանրապետությունում ինտենսիվ այգեգործության անցնելու համար պետք է ըստ ամենայնի բարձրացվի դրա մեքենայացման մակարդակը։ Վերջին տարիներին որոշ դրական փորձ է կուտակվել առավել աշխատատար պրոցեսներից երկուսի՝ այգեթաղի ու այգեբացի մեքենայացման բնագավառում։ Այդուհանդերձ, հանրապետության գիտնական-սելեկցիոներները առաջարկում են անցնել չթաղվող այգեգործության։ Այդ խնդրի լուծման նպատակով նրանց թափած բազմամյա ջանքերի արդյունքներն արդեն առկա են։ Այգեգործության, գինեգործության և պտղաբուծության հայկական գիտահետազոտական ինստիտուտի և Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի սելեկցիոներներն արդեն ստեղծել են խաղողի ավելի քան մեկ և կես տասնյակ ցրտադիմացկուն, բարձր բերքատու, բարձր շաքարայնություն ունեցող սորտեր։ Ըստ էության ժամանակն է, որպեսզի տնտեսությունները համարձակորեն տեղադրեն այդ սորտերը, իսկ նոր յուրացվող այգիների մեծագույն մասում տնկեն ցրտադի-



մացկուն սորտեր, իհարկե, նախապես յուրաքանչյուր այգու համար ունենալով գիտնականների հանձնարարականները։

ՍՄԿԿ XXVI համագումարը անասնապահությունը հայտարարեց հարվածային ճակատ գյուղում։ Տասներորդ հնգամյակում այդ ճյուղի հաջող զարգացման համար ստեղծվեց նյութատեխնիկական հզոր բազա, զգալիորեն ավելացավ անասնապահական մթերքների արտադրությունը, կենդանիների մթերատվությունը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1980 թվականի ապրիլյան և 1981 թվականի հուլիսյան պլենումները մշակեցին և հաստատեցին անասնապահության ու կերի արտադրության ինտենսիվացման և հետագա զարգացման կոմպլեքսային ծրագիր, որի հիմնական դրույթները պահպանվում են նաև պարենային ծրագրում։ Ինչ է արվելու դրանք իրականացնելու համար։

Հանրապետության սակավահողության պայմաններում անասունների գլխաքանակի անընդհատ ավելացումը օրակարգից հանվում է։ Ուրեմն անասնապահական մթերքների արտադրության ավելացման միակ ուղին, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը, ինտենսիվացումն է, այսինքն մեկ միավորից հնարավորին չափ շատ արդյունք ստանալը։ Դրան հասնելու համար հոտում ավելացվելու է կովերի գլխաքանակը և այն հասցվելու է 40—45 տոկոսի։ Ամենուրեք ինտենսիվ բտում կազմակերպելու, բարձր մթերատու կենդանիներով հոտը համալրելու միջոցով մթերման հանձնվող մեկ տավարի կենդանի քաշը կազմելու է 350—400, ոչխարինը՝ 42 և խոզինը՝ 100 կիլոգրամ։ Այս հնգամյակի վերջում մեկ կովի միջին կաթնատվությունը պետք է հասցվի 2.200—2.300 կիլոգրամի։

Նշված բնագծերը ռեալ են և դրանց կարող են հասնել հանրապետության բոլոր տնտեսությունները։ Այդ են վկայում փաստերը։ Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղի կոլտնտեսությունը հարուստ, բարձր զարգացած էկոնոմիկա ունեցող տնտեսություն է։ Նախկին Թայչարուխից ոչ մի հետք չի մնացել, մեղրաձորցիներն ապրում են տուֆակերտ, լուսավոր, հարմարավետ մենատներում և վայելում կուլտուրական կյանքի բոլոր բարիքները։ Եվ այդ առատության, վերափոխումների գլխավոր ու հիմնական աղբյուրը կոլտնտեսության բարձր զարգացած, ինտենսիվ անասնապահությունն է։

Գուցե Մեղրաձորը մի առանձին, յուրահատուկ պայմաննե՞ր ունի անասնապահության զարգացման համար։ Ո՛չ։ Նրա հողային հնարավորությունները շատ սահմանափակ են։ Ճիշտ է, տնտեսությունն ունի 2.500 հեկտար հողատարածություն, բայց դրա չնչին՝ 300 հեկտարից էլ պակաս մասն է պիտանի մշակության համար, այն էլ հատկացված է բանջարեղենին և ծխախոտին։ Մնացածը լեռնալանջեր են։

Անասնապահության զարգացման համար տնտեսության ղեկավարությունը, նրա վարչության նախագահ Լ. Գալստյանի նախաձեռնությամբ, ընտրեց ինտենսիվացման ուղին։ Պահանջվում էին կապիտալ խոշոր ներդրումներ, լիակատար մեքենայացված ֆերմաներ, համապատասխան կադրեր, անհրաժեշտ քանակությամբ կեր։ Պետությունն ամեն կերպ աջակցեց մեղրաձորցիներին։ Նրանք հաշվել էին, որ ներդրված մեկ ռուբլին քառապատիկ արդյունք կբերի։ Սկսեցին և հասան իրենց նպատակին։ Արդեն քանի տարի է, ինչ կոլտնտեսությունը մեկ կովից ստանում է շուրջ 3.000 կիլոգրամ կաթ, իսկ պետությանը վաճառվող մեկ տավարի կենդանի քաշը հասցրել է 450 և ավելի կիլոգրամի։ Տնտեսությունը դրան հասել է հոտի բարելավման, անասունների ստացիոնար խնամքի անցնելու, մթերման հանձնվող տավարը բտելու շնորհիվ։

Իսկ կերի հարցը ինչպե՞ս լուծվեց։ Մեղրաձորում որոշեցին հույս չդնել համակցված կեր գնելու վրա, անասունները տասնյակ կիլոմետրերով սարերը քշելու փոխարեն նպատակահարմար գտան խոտը բերել ֆերմա։ Եվ ի պատիվ մեղրաձորցի կոլտնտեսականների, պետք է նշել, որ նրանք կերի կուտակման գործում ուղղակի հերոսական ջանքեր են գործադրում։ Սա հանրապետությունում միակ տնտեսությունն է, որ եզներ է պահում աշխատեցնելու համար, որովհետև լեռներից մեքենաներով խոտը գյուղ փոխադրել հնարավոր չէ, շատ

տեղերից այն իջեցնում են սահնակներով: Առաջավոր այս կոլտնտեսությունը բազմիցս հաղթող է ճանաչվել սոցիալիստական մրցության մեջ, նրա մի շարք աշխատողներ արժանացել են կառավարական բարձր պարգևների:

Անտարակույս, հանրապետության կոլտնտեսություններից և սովխոզներից ոչ մեկի հողային և բնակլիմայական մյուս պայմանները մեղրաձորցիների ունեցածից վատ չեն: Միայն հարկավոր է համարձակորեն, բարձր պատասխանատվությամբ ձեռնամուխ լինել անասնապահության ինտենսիվացմանը: Այդ խնդրի լուծման հուսալի գրավականներից է պետության դրամական և նյութատեխնիկական օգնությունը:

Հանրապետությունում մսի արտադրության ավելացման առավել արագ լուծման ճանապարհը խոզերի գլխաքանակի ավելացումն է: Սոցիալիստական երկրներում, ինչպես նաև Միության շատ մարզերում մեկ շնչի հաշվով պահվում է ոչ պակաս, քան մեկ գլուխ խոզ: Իսկ շուրջ 3,5 միլիոն բնակչություն ունեցող մեր հանրապետությունում կա ընդամենը 150 հազար գլուխ խոզ: Այսքան նվազ գլխաքանակով հնարավոր չէ լուծել մսի արտադրության նշանակալի ավելացման խնդիրը, երբ մյուս մսատու կենդանիների գլխաքանակի ավելացման համար պայմանները աննպաստ են: Ուստի նախատեսված է 1983 թվականին խոզերի գլխաքանակը հասցնել կես միլիոնի: Դա հնարավորություն կընձեռի ընդամենը մեկ—երկու տարում մսի արտադրությունն ավելացնել 35—40 հազար տոննայով, իսկ դա լուրջ քայլ կլինի հարցի լուծման ճանապարհին:

Միայն պետական միջոցների օգտագործմամբ, իհարկե, դա հնարավոր չէ: Թեկուզ այն պատճառով, որ կպահանջվեն մի քանի տասնյակ միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ խոզաբուծական համալիրներ կառուցելու համար, իսկ այսօր մենք ի վիճակի չենք այդ անելու: Ի դեպ, կյանքը ցույց է տալիս, որ մեր հանրապետությունում չպետք է հրապուրվել խոշոր համալիրների կառուցմամբ, այդ գործում կան ուրույն, դժվարին, երբեմն էլ չլուծվող հարցեր: Այս առումով մենք պետք է լայնորեն օգտագործենք քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունների ընձեռած հնարավորությունները:

ՀԿԿ Կենտկոմի հանձնարարությամբ այս հարցը ժամանակին քննարկվեց գյուղմինիստրության կոլեգիայում, ընդունվեց համապատասխան որոշում, որի մեջ կոնկրետ նշված էին յուրաքանչյուր շրջանի անելիքները և հատկացվող միջոցները: Այդ գործին արդեն ձեռնամուխ են եղել մեծ թվով շրջաններ: Բնակչությունը մեծ ցանկություն ունի խոճկորներ վերցնելու, բտելու և տնտեսություններին վաճառելու, մանավանդ մսի պետգնման գների նոր բարձրացման պայմաններում:

Ներկայումս հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում պահվում է ընդամենը 80—85 հազար խոզ, որից մերուններ՝ շուրջ 7 հազար: Ակնհայտ է, որ այդ քանակությունը պետք է պակասեցվի և հասցվի 35—40 հազար գլխի և այն էլ միայն մերուններ, և ստացված խոճկորները պայմանագրային կարգով տրամադրվեն անհատական օժանդակ տնտեսություններին: Իսկ պետությունը նրանց կհատկացնի տարեկան 100 հազար տոննա համակցված կեր: Այս միջոցառման կիրառման շնորհիվ մեկ տարում խոզերի գլխաքանակը կավելացվի նշված քանակությամբ: Ահա հարցի լուծման և՛ արագ, և՛ ոչ թանկ ճանապարհը:

Անշուշտ, անասնապահության հաջող զարգացման գլխավոր նախապայմանն անհրաժեշտ քանակությամբ բարձրարժեք կերի կուտակումն է: Ընթացիկ հնգամյակը հանրապետության համար պետք է դառնա կերով լրիվ ապահովվածության հնգամյակ: Այս առնչությամբ անհրաժեշտ է կերարտադրության սիստեմում լուրջ փոփոխություն մտցնել: Հանրապետության տարբեր բնակլիմայական պայմաններում փորձարկվել և ուսումնասիրվել են հայրենական ու արտասահմանյան սելեկցիայի բազմաթիվ սորտեր և հիբրիդներ, որոնցից ընտրվել են առավել բերքատուները՝ տվյալ վայրում կերարտադրության մեջ օգտագործելու համար: Դրանցից են եգիպտացորենի «Ուզբեկական—100», արևածաղկի «Գիգանտ—549», շաքարային սորգո սորտերը և սուդանի խոտը:



Հենց արտադրական պայմաններում դրանց յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 500—700 ցենտներ կանաչ զանգված:

Գիտահետազոտական ինստիտուտների մշակած հանձնարարականների հիման վրա թվարկված կերային կուլտուրաներին կարելի է հատկացնել 20—21 հազար հեկտար ցանքատարածություն: Այդ տարածությունները և կուլտուրաները բաշխված են ըստ գոտիների, շրջանների ու տնտեսությունների: Հաշվարկները վկայում են, որ եթե այդ հեկտարի միջին բերքատվությունը լինի թեկուզ 400—450 ցենտներ, ապա կկուտակվի 800—900 հազար տոննա բարձրորակ սիլոս: Ուրեմն, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը, մեկ միլիոն տոննա սիլոս ստանալը ռեալ խնդիր է: Այդ քանակությունը լրիվ կբավարարի տասնմեկերորդ հնգամյակի վերջում եղած անասունների գլխաքանակին: Առանձնապես մեծ չափերով կավելանան առվույտի ցանքատարածությունները: Արդեն այս տարի կատարվեց այդ բարձրարժեք կերային կուլտուրայի աննախադեպ ցանք՝ 11 հազար հեկտար: Նախատեսվում է հնգամյակի տարիներին դրա ընդհանուր տարածությունները հասցնել 40—45 հազար հեկտարի՝ ներկայիս 30 հազար հեկտարի փոխարեն:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումներում կերի արտադրության ավելացմանը զուգընթաց դրված է հատկապես դրանց որակի բարձրացման հարցը: Ժամանակն է, որ ամենուրեք անցնենք ժամանակակից տեխնոլոգիայով կերի նախապատրաստմանը՝ ստեղծելով կերագործարաններ, ինչպես արդեն արել են Հրազդանում, Էջմիածնում, Սիսիանում, Արտաշատում, Ախուրյանում, Աշտարակում և մի քանի այլ շրջաններում: Անցումն ինտենսիվ անասնապահության բացառում է կենդանիներին ավանդական ձևով կերակրելը: Այսուհետև կերով ապահովվածության ցուցանիշը ոչ թե դեզերի քանակությունը, տոննաները պետք է լինեն, այլ այն, թե կենդանուն տրվող կերաբաժնի մեջ ինչքան կերամիավոր կա, բավարա՞ր է, արդյոք, սպիտակուցների քանակությունը: Ուրեմն խոտը քաղելուց հետո ոչ թե պետք է չորացնել ու դեզ դնել, այլ կանաչ վիճակում դրանից պատրաստել խոտալյուր, գրանուլ, սենաժ և այդպես պահել ու տալ կենդանիներին:

ՍՍՀՄ պարենային ծրագրում սահմանված են այն ուղիներն ու միջոցները, որոնք ապահովում են ծրագրի կենսագործումը: Նախապայմաններից մեկը ղեկավարման վերակառուցումն է, այն օպերատիվ դարձնելը, պարենային մթերքների արտադրության հետ առնչվող բոլոր մարմինների աշխատանքի գնահատման ճիշտ չափանիշների կիրառումը: Սահմանված են գյուղատնտեսական արտադրության հիմնական՝ շրջանային օղակի գործունեության ուղղությունները, իրավունքներն ու պարտականությունները: Խստիվ արգելվում է կոլտնտեսությունների և սովխոզների նկատմամբ մանրախնդիր խնամակալությունը:

Գյուղատնտեսության կառավարման վերակառուցումը, արտադրության վերելքին ուղղված մեծ կապիտալ ներդրումները, այն արտոնություններն ու նյութական խրախուսանքի միջոցները, որոնք ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշմամբ տրվում են կոլտնտեսություններին, պետական տնտեսություններին, նրանց աշխատողներին, էապես կնպաստեն պարենային ծրագրի հաջող կատարմանը:

Դրա երաշխիքը համաժողովրդական սոցիալիստական մրցությունն է, գյուղի և քաղաքի բոլոր աշխատավորների ստեղծագործական ջանքերի միավորումը պարենային ռեսուրսների ավելացման նախատեսված բնագծերի նվաճման համար, որը սովետական մարդկանց բարեկեցության անշեղ բարձրացման, մեր հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման գլխավոր պայմաններից մեկն է:

---

# ԲՐԻԳԱԴԱՅԻՆ ԿԱՊԱԼԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

Ռ. Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ աշխատանքի կոլեկտիվ կազմակերպման ու վարձատրման ձևերն առանձնահատուկ կարևորություն են ձեռք բերում: Եվ դա բնական է. իրենց բուն էությամբ այդ ձևերն առավելագույնս ճշգրտությամբ համընկնում են տնտեսական զարգացման ներկա փուլի առանձնահատկություններին, նյութական ու աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման պահանջներին: Աշխատանքի կազմակերպման կոլեկտիվ ձևերից մեկը, իսկ ՍՄԿԿ XXVI համագումարից հետո առանց տարակուսելու կարելի է ասել՝ հիմնականը, բրիգադային եղանակն է, որը հետզհետե ավելի ու ավելի ամուր դիրքեր է նվաճում հասարակական արտադրության համակարգում: «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում» ուղղակի խնդիր է դրվում՝ միջոցառումներ իրականացնել աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բրիգադային եղանակի հետագա արմատավորման ու արդյունավետության բարձրացման նպատակով:

Աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակի անվիճելի առավելությունների մասին է վկայում երկրի առաջավոր ձեռնարկությունների փորձը: Այդ եղանակը կյանքի է կոչվել արտադրության կազմակերպման այն օբյեկտիվ պահանջներով, որոնք բխում են արդի փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության հետևողական կիրառման անհրաժեշտությունից: Տնտեսության կառավարման ժամանակակից մեթոդները, ձեռնարկությունների ու դրանց թողարկած արտադրանքի այժմյան մասշտաբներն ու ծավալները պահանջում են, որպեսզի «յուրաքանչյուր աշխատող պարզ պատկերացնի իր տեղն աշխատանքային պրոցեսում, գիտենա, թե ինքն ինչ է անում և ինչու է անում, ինչ է իրենից կախված, զգա, որ իր աշխատանքն ընդհանուր աշխատանքի անհրաժեշտ մասն է» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 6, էջ 14):

Արտադրական բրիգադների ստեղծման, դրանց աշխատանքի կազմակերպման, նորմավորման ու վարձատրման կարգը սահմանված է արտադրական բրիգադի, բրիգադավարի ու բրիգադի խորհրդի մասին տիպային կանոնադրությամբ, որը հաստատել են ՍՍՀՄ աշխպետկոմը և ՀԱՄԿԽ-ի քարտուղարությունը: «Պլանավորումը բարելավելու և աշխատանքի որակի ու արտադրության արդյունավետության բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ նշվում է, որ աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային եղանակը տասնմեկերորդ հնգամյակում պետք է դառնա հիմնականը:

Բրիգադային աշխատանքի պայմաններում անհամեմատ բարձրանում են բանվորական ուժի որակին, բանվորի կողմից կոլեկտիվ աշխատանքի առանձնահատկությունների ըմբռնմանը, աշխատանքային կոլեկտիվի սկզբնական օղակի շրջանակներում կառավարմանը մասնակցելու ունակությունների զարգացմանը ներկայացվող պահանջները:



Բրիգադային եղանակն ընթացիկ հնգամյակում աշխատանքի կազմակերպման հիմնական ձև դարձնելու խնդրի գործնական լուծումը հարկ կլինի միաժամանակ իրականացնել երկու ուղղությամբ. նախ՝ այն ճյուղերում ու արտադրություններում այդ եղանակի հետագա կատարելագործմամբ, որտեղ դա արդեն ավանդաբար գոյություն ունի և, երկրորդ, այն ճյուղերում ու արտադրություններում դրա ներդրմամբ, որտեղ տիրապետում է աշխատանքի անհատական կազմակերպումը:

Հայտնի է, որ արտադրության շատ ոլորտներում մարդիկ անցյալում եւս միավորված են եղել բրիգադներում, բայց նրանք աշխատում էին անհատական պլաններով, յուրաքանչյուրը կատարում էր աշխատանքի իր բաժինը և փաստորեն պատասխանատու չէր բրիգադի գործունեության վերջնական արդյունքի համար: Բնականաբար, նման պայմաններում ի հայտ էին գալիս շահավետ ու ոչ շահավետ աշխատանքներ և, դրանից բացի, չափազանց մեծ էր հաշվառման ծավալը: Մինչդեռ այժմ, աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բրիգադային եղանակի ներկա պայմաններում, էապես բարձրանում է բրիգադի դերը սոցիալիստական տնտեսավարման համակարգում, փոխվում է աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բուն էությունը: Այլ կերպ ասած, բրիգադի բոլոր ջանքերն ուղղվում են այս կամ այն կոնկրետ տեղամասում աշխատանքի որոշակի վերջնական արդյունքի ձեռքբերմանը: Բրիգադի յուրաքանչյուր անդամ այս դեպքում արդեն շահագրգռված է կոլեկտիվ աշխատանքի արդյունքով, իսկ դա ինքնին ենթադրում է փոխադարձ օգնության ու պահանջկոտության ուժեղացում, աշխատանքային կարգապահության ամրապնդում:

Բրիգադն աշխատում է միասնական կարգադրով, նրա յուրաքանչյուր անդամի վարձատրությունը պայմանավորված է ոչ միայն իր որակավորմամբ, այլև կոլեկտիվ արդյունքում ունեցած իրական աշխատանքային ավանդով: Բրիգադը կազմակերպվում է արտադրական առաջադրանքների համատեղ կատարման նպատակով: Այն բաղկացած է արտադրության պրոցեսում մշտապես միմյանց հետ կապված մարդկանցից, որոնց համատեղ աշխատանքի արգասիքը այս կամ այն չափով ամբողջական կամ ավարտուն արդյունքն է: Ընդ որում բրիգադի աշխատանքի արդյունքները որոշվում են նրա յուրաքանչյուր անդամի անհատական ներդրմամբ, իսկ դա բացառում է դիմազրկությունը:

Բրիգադային եղանակն առավելագույնս համապատասխանում է ժամանակակից արտադրության, աշխատանքի գիտական կազմակերպման, աշխատավորների կրթական ու կուլտուրական մակարդակի աճած պահանջներին: Եվ պատահական չէ բնավ, որ այն լայն տարածում է գտել արդյունաբերության, շինարարության, կենցաղային սպասարկման ոլորտներում, իսկ կոլտնտեսային արտադրության համակարգում աշխատանքի կազմակերպման այդ եղանակը վաղուց հաստատել է իր գոյության իրավունքը, և սույն հոդվածում մենք կփորձենք միայն արծարծել ժողովրդական տնտեսության այդ առաջատար ճյուղում դրա հետագա կատարելագործման որոշ նկատառումներ:

Արդեն երկար ժամանակ է, ինչ բրիգադային եղանակը կիրառվում է կոլտնտեսություններում: Դա բացատրվում է գյուղատնտեսական արտադրության առանձնահատկություններով, այն բանով, որ տնտեսություններն ավելի ու ավելի են խոշորանում, հագեցվում նորագույն տեխնիկայով, իսկ այդ ամենն աշխատանքի կազմակերպմանը որակապես նոր մոտեցում է պահանջում:

Կոլտնտեսություններում բրիգադային եղանակի արմատավորման փորձը լիովին հաստատում է դրա ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական առավելությունները: Այս եղանակի պայմաններում բրիգադի յուրաքանչյուր անդամի աշխատանքը շաղկապվում է կոլեկտիվի իրական պլանի հետ: Այսպիսով, բարենպաստ պայմաններ են ստեղծվում աշխատանքի արտադրողականության բարձրացման, մեքենաների ու սարքավորումների յուրաքանչյուր միավորի և աշխատաժամանակի յուրաքանչյուր ժամի լիարժեք օգտագործման ասպարեզում կոլեկտիվի բոլոր անդամների շահագրգռության բարձրացման համար: Բրիգադը սկզբնական արտադրական մի կոլեկտիվ է, որն օժտված է

արտադրության կառավարման լայն լիազորություններով։ Այստեղ մեծ է կոլեկտիվի դերն իր արտադրական գործունեության հիմնական խնդիրների լուծման, աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացումը խթանելու նպատակով, վարձատրության նշանակության բարձրացման՝ արտադրության զարգացման այդ սկզբունքային գործոնի նպատակամետ կիրառման ասպարեզում։

Ինչպես պետական ձեռնարկություններում, այնպես էլ կոլտնտեսություններում արտադրական բրիգադների աշխատանքի փորձը վկայում է, որ արդյունավետությունն այստեղ մեծապես պայմանավորված է արտադրության նախապատրաստական փուլի լավ կազմակերպմամբ, աշխատանքների խելացի պլանավորմամբ ու նորմավորմամբ, վարձատրության ու պարգևատրման ցուցանիշների ճիշտ ընտրությամբ, բրիգադի անդամների միջև աշխատավարձի բաշխման օպտիմալ եղանակների կիրառմամբ։

Աշխատանքի կազմակերպման ու խթանման կոլեկտիվ հիմունքների կիրառման առաջին ու գլխավոր նպատակը վերջնական բարձր արդյունքների հասնելու, մասնավորապես արտադրողականության բարձրացման համար անհրաժեշտ պայմանների ապահովումն է։ Ամենից առաջ հարկավոր է ցուցանիշների միասնական համակարգ մշակել արտադրության բոլոր օղակների, ներառյալ և բրիգադների համար, ինչպես նաև կատարելագործել արտադրական կապերն ու հաշվետվության համակարգը։

Բրիգադային եղանակի կիրառումը շատ բանով փոխում է արտադրության կառավարման ստրուկտուրան։ Ստեղծվում են ղեկավարման կոլեկտիվ մարմիններ, ինչպիսիք են բրիգադների ու բրիգադավարների խորհուրդները, դրանցում ընդգրկված աշխատողները լայն հնարավորություններ են ստանում ամենաակտիվ կերպով մասնակցելու արտադրության կառավարմանը։ Զուտ արտադրական խնդիրներից բացի, դրանք լուծում են նաև աշխատողների ընտրության, տեղաբաշխման ու որակավորման հարցերը, սահմանում աշխատավարձի ու պարգևի չափերը, կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական ակտիվի հետ ամփոփում են մրցության արդյունքները, ներդնում առաջավոր փորձը, զբաղվում կոլեկտիվի անդամների դաստիարակությամբ։

Իր աճած դերին համապատասխան՝ կոլտնտեսություններում այժմ խիստ կարևորվում է բրիգադավարի ստատուսը։ Այնտեղ, ուր ճիշտ են ըմբռնում գործի էությունը, բրիգադավարներին ավելի լայնորեն են ներգրավում կոլտնտեսությունների ղեկավար մարմիններում։ Ներկայիս բրիգադավարը ըստ էության աշխատողի նոր տիպ է, որն իր նախորդներից էապես տարբերվում է մասնագիտական որակավորմամբ, զուգակցում է արտադրական, կազմակերպչական ու դաստիարակչական գործունեությունը։

Կոլտնտեսությունների արտադրական պոտենցիալն իր խիստ յուրակերպությունն ունի և մեծ չափով որոշվում է տնտեսական շրջանառության մեջ ներառված բնական ռեսուրսներով։ Տնտեսական լծակների համակարգում, որոնցով հասարակությունը ներգործում է կոլտնտեսությունների արտադրական կոլեկտիվների վրա, կարևորագույն դերը պատկանում է հողին։ Եվ կոլտնտեսություններում արտադրական բրիգադների կազմակերպման գլխավոր սկզբունքներից մեկը արտադրամիջոցների, ամենից առաջ հողատարածությունների տևական կցումն է դրանց։ Հողակցումների ժամանակ պետք է ելնել այն սկզբունքից, որ հավասար արտադրական պայմաններ ապահովվեն բոլոր բրիգադների համար՝ նկատի ունենալով մշակվող կուլտուրաների կազմը, աշխատուժի առկայությունը, տեխնիկայով ապահովվածությունը և այլն։ Ընդ որում պետք է խուսափել մեխանիկական հավասարեցումից, երբ, անտեսելով օբյեկտիվ պայմանները, հավասար քանակությամբ տեխնիկա, աշխատուժ ու հողատարածություններ են հատկացվում։ Հողի որակը, մանավանդ մեր հանրապետության պայմաններում, հաճախ տարբեր է ոչ միայն առանձին գոտիներում կամ շրջաններում, այլև նույն տնտեսության տարբեր տեղամասերում։ Ուստի ձևական հավասարությունն այստեղ իրականում հաճախ արտադրական հնարավորությունների անհավասարություն է նշանակում։

Բրիգադները մեծ դեր են խաղում նաև սոցիալական իմաստով. նպաստում



են կոլեկտիվ հիմունքների ամրապնդմանը, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի զարգացմանը, փոխադարձ օգնության իրադրության ստեղծմանը, կոլեկտիվում բարենպաստ սոցիալ-հոգեբանական մթնոլորտի հաստատմանը։ «Լավ կազմակերպված, արդյունավետ, ես կասեի, խելացիորեն աշխատող բրիգադը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում,— բանվորների կառավարչական հմտությունների զարգացման իսկական դպրոց է, ամեն մի ստեղծագործական նախաձեռնության փորձնական լաբորատորիա։ Այդպիսի բրիգադի անդամները գործի մեջ, ամենօրյա համատեղ աշխատանքում տիրապետում են մեր ժամանակներում այնքան անհրաժեշտ տնտեսական, ինչպես նաև քաղաքական գիտելիքների։ Այդպիսի բրիգադում հիրավի կոփվում է իր գործարանի տիրոջ, իր երկրի տիրոջ զգացումը»։

Աշխատանքի կազմակերպման ու վարձատրության բրիգադային մեթոդի սոցիալական նախադրյալներն են՝ կոլեկտիվի արտադրական գործունեության վերջնական արդյունքի նկատմամբ նրա յուրաքանչյուր անդամի շահագրգռության բարձրացումը, արտադրական շահերի ընդհանրության հիման վրա կոլեկտիվի տարբեր խմբերի համախմբումը, աշխատանքում ստեղծագործական հիմունքների զարգացումը։

Լավ կազմակերպված արտադրական բրիգադներն աչքի են ընկնում իրենց անդամների շեշտված համախմբվածությամբ, որը բացատրվում է նրանց նպատակների ու վարքագծի ընդհանրությամբ։ Կոլեկտիվի կազմի կայունությունն առհասարակ նրա գոյության ու զարգացման առաջին պայմանն է։ Այն վկայում է ներքին կապերի ամրության, իրենց աշխատանքից կոլեկտիվի անդամների բավարարվածության մասին։

Չբացառելով աշխատուժի կազմակերպված տեղաշարժերի, ներկոլեկտիվային տեղափոխությունների հնարավորությունն ու անհրաժեշտությունը, նշենք, սակայն, որ հանրապետության, մասնավորապես նրա լեռնային շրջանների տնտեսություններում արտադրական կոլեկտիվների կայունության վրա որոշակի բացասական ազդեցություն է ունենում տարերային տեղաշարժը՝ աշխատուժի հոսունությունը, որը պայմանավորված է ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ բնույթի մի շարք հանգամանքներով։

Աշխատուժի տեղաշարժը կարգավորվող պրոցես է և այն պետք է սկսել կոլեկտիվի նվազ կայուն խմբերից։ Կոլտնտեսության ղեկավարությունը պետք է կարողանա ժամանակին պարզել, թե տվյալ տեղամասում ինչպիսի չլուծված հարցեր կան, որոնք կարող էին հոսունության պատճառ լինել։ Այդ պատճառների բացահայտումը, որոնք ամեն մի առանձին խմբի համար կարող են յուրահատուկ լինել, հնարավորություն է ընձեռում համապատասխան միջոցառումներ մշակելու և դրանք արտացոլելու արտադրական կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանում։

Կոլտնտեսություններում, ինչպես և պետական ձեռնարկություններում, այժմ լայն տարածում են գտնում մասնագիտացված և կոմպլեքսային բրիգադները։ Դրանցից առաջինները միավորում են նույն մասնագիտության մարդկանց, որոնք զբաղված են համասեռ տեխնոլոգիական պրոցեսների կատարմամբ, իսկ երկրորդները կոմպլեկտավորվում են տարբեր մասնագիտության աշխատողներից՝ տեխնոլոգիական առումով տարասեռ, բայց փոխշաղկապված աշխատանքների կոմպլեքսի կատարման համար։ Նման բրիգադների կազմակերպումը ենթադրում է կոլեկտիվ աշխատանքի հաշվառման հիման վրա արտադրական տեղամասերի ու բրիգադների մասնագիտացում, տնտհաշվարկային ու նորմավորված առաջադրանքների ապահովում, աշխատանքային մասնակցության գործակցի (ԱՄԳ) հաշվառմամբ վարձատրության ֆոնդի բաշխում։

Շատ տեղերում բրիգադի վաստակը նրա անդամների միջև բաշխելիս ընդհանուր արդյունքում այս կամ այն անդամի ներդրումը հաշվարկում են ԱՄԳ-ի միջոցով, որը սահմանում է բրիգադի խորհուրդը կամ բրիգադի ժողովը։ Արձանագրության մեջ յուրաքանչյուր անդամի համար նշվում են աշխատանքային մասնակցության գործակիցը, այդ գործակիցը մեծացնելու (բարձրարտադրո-

ղական աշխատանք, առաջավոր մեթոդների կիրառում, պրոֆեսիոնալ վարպետություն, աշխատանքի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունք, սոցպարտավորությունների կատարում և այլն) կամ իջեցնելու (պարապուրդներ, ռեժիմի խախտում, պլանների թերակատարում և այլն) պատճառները։ Գործակցի սահմանման վերաբերյալ բրիգադի խորհրդի կամ ժողովի որոշումն օրինական է, երբ այն ընդունվում է նրա անդամների առնվազն երկու երրորդի մասնակցությամբ ու ձայների մեծամասնությամբ։

Մի քանի տարի առաջ երկրի կոլտնտեսությունների մեծ մասն իրենց համակարգում ունեին բազմաճյուղ ներտնտեսական ստորաբաժանումներ՝ ջոկատներ, կոմպլեքսային բրիգադներ կամ արտադրական տեղամասեր, որոնց կառավարման կառուցվածքին բնորոշ էր գծային ղեկավարների առկայությունը. գտնվելով որոշակի ենթակայության ներքո, իրենց տեղամասերում նրանք իրականացնում էին մի շարք ճյուղերի ընդհանուր ղեկավարությունը։ Նման ստրուկտուրան հիմնականում համապատասխանում էր բազմաճյուղ տնտեսության պայմաններին, նրա կազմակերպական-տնտեսական կառուցվածքին, բայց և ուներ մի շարք էական թերություններ։ Այսպես, կոմպլեքսային բրիգադների ղեկավարները ընդհանուր հարցերում ենթարկվում էին տնտեսության ղեկավարին, իսկ մասնագիտական հարցերում՝ ճյուղային գլխավոր մասնագետներին։ Քանի որ գծային ղեկավարներին հարկ էր լինում զբաղվել մի շարք ճյուղերով, նրանք ստիպված էին յուրատեսակ «ունիվերսալներ» լինել։ Թերությունն էր և այն, որ տնտեսության գլխավոր մասնագետները կառավարման միջանկյալ օղակով ասես թե անջատված էին իրենց ճյուղերից։ Իսկ դա նկատելիորեն իջեցնում էր կառավարման օպերատիվությունը և արտադրության արդյունքների համար մասնագետների պատասխանատվությունը։

Գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացման և մասնագիտացման մակարդակի բարձրացումը, տեխնիկական հագեցվածության աճը, մասնագետ կադրերի պատրաստումը նպաստավոր պայմաններ ստեղծեցին ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ մեր հանրապետության կոլտնտեսություններում կառավարման ու աշխատանքի կազմակերպման առավել ժամանակակից եղանակներ արմատավորելու, ճյուղային սկզբունքի վրա խարսխված կառավարման այլ ստրուկտուրա կիրառելու համար։ Որոշակի ճյուղի կամ տեխնոլոգիական առումով համասեռ մի շարք ճյուղերի աշխատողներ կազմակերպորեն միավորվում են ներտնտեսական մեկ ստորաբաժանման մեջ։ Այն ղեկավարում է առավել փորձառու մասնագետը, որը և լրիվ պատասխանատվություն է կրում ճյուղի զարգացման համար։ Նրա ենթակայության տակ են գտնվում տվյալ բնագավառում զբաղված բոլոր բրիգադավարներն ու մասնագետները։

Աշխատանքի կազմակերպման ճյուղային կառուցվածքի հետաքրքրական փորձ ունի Բելոռուսական ՍՍՀ Գրոդնոյի մարզի «Պրոգրես» կոլտնտեսությունը։ Այստեղ բուսաբուծության բնագավառում կոմպլեքսային արտադրական ստորաբաժանումների փոխարեն ստեղծել են տրակտորային-դաշտավարական ճյուղային չորս տեղամասեր՝ 1.200—1.491 հեկտար վարելահողով։ Բուսաբուծության ճյուղը ղեկավարում է գլխավոր գյուղատնտեսը։

Անասնապահության ճյուղը բաղկացած է խոշոր եղջերավոր անասունների 12 ֆերմաներից ու կոմպլեքսներից՝ 10 հազար ընդհանուր գլխաքանակով, կերի որակի լաբորատորիայից և անասնաբուժական ծառայությունից։ Կերարտադրության ձեռնարկությունն անմիջականորեն ենթարկվում է նախագահի՝ արտադրության գծով տեղակալին։ Մեքենայացման արտադրամասն ապահովում է մեքենաների ու մեխանիզմների բարձր արտադրողական աշխատանքը ինչպես հողագործության, այնպես էլ անասնապահության մեջ։ Ստեղծված են շինարարական ու կոմունալ ծառայության արտադրամասեր, մատակարարման և իրացման բաժիններ, պլանային, ֆինանսական և դիսպետչերական ծառայություններ։

Արտադրության, աշխատանքի ու կառավարման կազմակերպումը կատարելագործելու նպատակով կոլտնտեսությունում իրականացված միջոցառումները մեծապես նպաստել են արտադրության արագ վերելքին, նրա արդյունա-



վետության բարձրացմանը։ Հարյուր հեկտար գյուղատնտեսական հողատարածության հաշվով այստեղ 1976—1980 թթ. տարեկան միջին համախառն արտադրանքը գումարային արտահայտությամբ կազմել է 83 հազար ռուբլի, ստացվել է 3,4 միլիոն ռուբլու շահույթ, որը մի քանի անգամ բարձր է հանրապետության կոլտնտեսությունների համապատասխան միջին ցուցանիշից։

Ուշադրության է արժանի երկրի շատ տնտեսություններում կիրառվող մեքենայական «անընդմեջը»։ Այս եղանակի դեպքում մեխանիզատորներն ընդգրկվում են օղակներում (4-ական մեխանիզատոր ամեն մի օղակում) և աշխատանքային ու հանգստի օրերի ճիշտ զուգորդմամբ ապահովվում է տեխնիկայի օգտագործման անընդհատությունը։ Դրա շնորհիվ մեքենաների օգտագործման գործակիցը բարձրանում է մոտ 12, իսկ մեխանիզատորների օրական վարձատրությունը՝ 10 տոկոսով։ Մեխանիզատորներին կանոնավոր կերպով հանգստյան օրերի հատկացումը, ինչպես նաև աշխատանքի պայմանների բարելավումը նկատելիորեն բարձրացնում են արտադրողականությունը։ Փորձը ցույց է տալիս, որ այս պայմաններում էապես կրճատվում են գյուղատնտեսական աշխատանքների կատարման ժամկետները, ամրապնդվում է կարգապահությունը, կանխվում գյուղական մեխանիզատորների միգրացիան։

Ի տարբերություն բրիգադների, որոնք իրենց ամրացված տեղամասերում աշխատանքների ողջ կոմպլեքսը կատարում են իրենց ուժերով, կոմպլեքսային մեքենայացված օղակները կատարում են հիմնական աշխատանքները՝ մշակություն, բերքահավաք, իսկ օժանդակ գործերն այս դեպքում արվում են օղակի մեջ չմտնող մարդկանց ուժերով։

Կոլտնտեսություններում կապալային օղակների երևան գալը նոր երևույթ է, բայց արդեն ակնհայտ է, որ աշխատանքի կազմակերպման այդ ձևն արժանի է ամենայն ուշադրության ու աջակցության։ Երկրի մի շարք կոլտնտեսություններում գործող նման օղակները արտադրական ռեզերվների արդյունավետ օգտագործման հիրավի աննախադեպ օրինակ են տալիս։

Կկամենայինք փոքր-ինչ հանգամանորեն խոսել Սարատովի մարզի Նատալինո գյուղի Կարլ Մարքսի անվան կոլտնտեսության՝ Վ. Կրասկովսկու տնտհաշվարկային օղակի մասին։ Ի տարբերություն երկրի այլ տնտեսություններում եղած նման օղակների, որոնք գործում են սեզոնային ձևով (գարուն—աշուն) և զբաղված են կամ դաշտավարության մեջ կամ անասնապահության, Կրասկովսկու օղակը մելիորատիվ-անասնապահական է։ Բոլորովին այլ է և նրա կազմակերպման սկզբունքը. օղակը գործում է կլոր տարին և անասուններ է բտում։

Կոլտնտեսությունն ու օղակը, որը նրա անբաժանելի մասն է, միմյանց հետ պայմանագիր են կնքում փոխադարձ պարտավորությունների վերաբերյալ։ Օղակին հատկացվում են 68 հեկտար ոռոգելի դաշտեր, անհրաժեշտ տեխնիկա՝ տրակտորներ, խոտհնձիչներ, անձրևացման մեքենաներ, պոմպակայաններ և, իհարկե, խոշոր եղջերավորի մատղաշ՝ ձմռանն ավելի քան 300, ամռանն ավելի քան 500 գլուխ, որոնց նա պետք է համապատասխան ժամկետներում բտի և հանձնի պետությանը։ Եվ այդ ամենը՝ օղակի հինգ անդամներով։

Ինչ խոսք, աշխատանքի ծավալը սովորականից շատ ավելի մեծ է՝ առվույտի մշակությունից, ոռոգումից ու պարարտացումից մինչև կենդանիների կերակրում։ Բայց օղակի անդամները չեն դժգոհում և ներդնում են առավելագույնը՝ վերջնական բարձր արդյունքի համար։ Տնտհաշվարկային այս օղակն իր հինգ անդամներով անցյալ տարի ստացել է 108 տոննա տավարի միս և կոլտնտեսությանը բերել 92,4 հազար ռուբլու զուտ շահույթ։

Վերջնական բարձր արդյունքը նաև բարձր վարձատրության ամուր հիմքն է։ Անցյալ տարի օղակի յուրաքանչյուր անդամի աշխատավարձը կազմեց մոտ 4,5 հազար ռուբլի։ Հատկանշական է, որ օղակի անդամների ստացած աշխատավարձը կազմել է նրանց ստեղծած նյութական արժեքների 11,9 տոկոսը միայն։ Համեմատության համար նշենք, որ այդ նույն առաջավոր տնտեսությունում կոլտնտեսականների վարձատրության համար միջին հաշվով հատկացվում է գյուղատնտեսական մթերքների իրացումից ստացված դրամական միջոցների 27,9 տոկոսը։

Ահա թե ինչպիսի ռեզերվներ ունի տնտհաշվարկը, եթե անգամ այն կիրառվում է օղակի փոքր շրջանակներում։

Իհարկե, աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բրիգադային եղանակի վիթխարի առավելությունների մասին հիմա գիտե տնտեսական ամեն մի ղեկավար և հազիվ թե դրա օգտին ագիտացիա մղելու անհրաժեշտություն կա։ Այս հարցում միասնական կարծիք կա, որն ամրապնդված է կուսակցական համապատասխան որոշումներով։ Բայց ահա գործնականում մոտեցումը բնավ միատեսակ չէ։

Երկրի շատ շրջաններում, ինչպես վկայում են և վերը բերված օրինակները, ինտենսիվ որոնումներ են կատարվում բրիգադային եղանակը ո՛չ միայն լայնորեն ներդնելու, այլև դրա ընձեռած հնարավորություններն առավել արդյունավետ օգտագործելու համար։ Այդ ընդհանուր պրոցեսում ակտիվորեն ներգրավվել է գյուղատնտեսական արտադրությունը, ընդ որում արդեն ակնհայտ են այդ մեթոդի ստեղծագործական կիրառման ոչ քիչ թվով հիանալի օրինակներ։

Միայն բուսաբուծության ասպարեզում երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում կապալային եղանակով այժմ աշխատում են 32 հազար բրիգադներ և օղակներ կամ դրանց ընդհանուր թվի ինը տոկոսը։ Առանձին հանրապետություններում, ինչպես, օրինակ, Ուզբեկստանում և Կիրգիզիայում, այդ ցուցանիշը շատ ավելի բարձր է, այստեղ տնտհաշվարկային մեթոդով աշխատում են յուրաքանչյուր չորրորդ բրիգադն ու օղակը։ Որպես կանոն, այդ եղանակի արմատավորումն էականորեն նպաստել է աշխատուժի, մեքենաների, վառելիքի, պարարտանյութերի արդյունավետ օգտագործմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանն ու բերքատվության բարձրացմանը։

Աշխատանքի կազմակերպման ու վարձատրության բրիգադային եղանակի արմատավորման գործում, ցավոք, խիստ դանդաղում են մեր հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները։ Իհարկե, չի կարելի անտեսել այդ եղանակին անցնելու ասպարեզում եղած դժվարությունները։ Տնտհաշվարկային բրիգադների և օղակների ստեղծումը նախապատրաստական լուրջ աշխատանք է պահանջում։ Մասնավորապես, ամենայն ճշգրտությամբ պետք է հաշվի առնել տվյալ արտադրական կոլեկտիվի հնարավորությունները, հատկացվող հողատարածությունների ու հանձնարարվող կուլտուրաների համապատասխանությունը, տեխնիկայի, պարարտանյութերի չափերն ու քանակը, վարձատրության սիստեմի կատարելագործման հետ առնչվող հարցերը և այլն։ Եվ գործի կարևորությունը պահանջում է առանց ձգձգելու լուծել այդ հարցերը, ձեռնամուխ լինել գյուղատնտեսական արտադրության կազմակերպման հետագա կատարելագործմանը։ Այդ նպատակով կատարվող եռանդուն որոնումները, որ այժմ բնորոշ են երկրի շատ շրջանների, պետք է ակտիվ գործունեության մղեն նաև մեր հանրապետության գյուղատնտեսության աշխատողներին։

Մեր երկրի գյուղատնտեսությունը զարգացման նոր փուլ է թևակոխում։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը խոր ու բազմակողմանիորեն վերլուծեց երկրի ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման արդյունքները, նշեց նրա հետագա առաջընթացի հիմնական ուղիները։ Հիրավի պատմական կարևորագույն փաստաթուղթ է պլենումի ընդունած պարենային ծրագիրը, որի իրականացման համար կուսակցությունը մշակել է կազմակերպական, տնտեսական ու սոցիալ-քաղաքական միջոցառումների մի ամբողջ սիստեմ։ Ինչպես պարենային ծրագրում, այնպես էլ մայիսյան պլենումից հետո Կենտկոմի ընդունած որոշումներում քանիցս շեշտվում է գյուղատնտեսական արտադրության կազմակերպման և աշխատանքի վարձատրության ու խթանման գործում կապալային եղանակը հետևողականորեն արմատավորելու անհրաժեշտությունը։

Գյուղատնտեսական արտադրության մեջ բրիգադային աշխատանքի կատարելագործված, արդի պահանջներին համապատասխանող եղանակների արմատավորումը ժամանակի հրամայական պահանջն է։

---




ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ՍՈՎԵՏԱՀԱՅ ԳՐԱՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՅՍՕՐՆ ՈՒ ՎԱՂԸ

**Գ. Մ. ՄՈՒՂՆԵՑՅԱՆ**
Հայկական ՍՍՀ հրատարակչության, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի նախագահ

ՏՊԱԳԻՐ ԽՈՍՔԸ ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ հոգևոր կյանքի, նրա գոյատևման մաքառումների ու հայրենաշեն գործերի անբաժան ուղեկիցն է եղել։ Մեր ժողովրդի բազմադարյան մշակույթի տարեգրքում ոսկե տառերով են գրված Մեսրոպ Մաշտոցի և Խորենացու, Կորյունի ու Եզնիկ Կողբացու, Դավիթ Անհաղթի ու Ղազար Փարպեցու, Եղիշեի ու բոլոր նրանց անունները, ովքեր կանգնած էին հայ գրի ու գրչության ակունքների մոտ, ովքեր տակավին հնագույն դարերում ստեղծեցին մեր հարուստ ու սքանչելի գրականությունը։

Հայ գիրքը, լինելով իրեն ստեղծող ժողովրդի բախտակիցը, նրա նման ենթարկվել է օտարների հարձակումներին, այրվել ու ոչնչացվել, նորից վերածնվել, թափառել է աշխարհե-աշխարհ, մինչև որ հինավուրց Նաիրի երկրում կծագեր Հոկտեմբերի կենարար արևը։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումով հայ գրահրատարակչությունն առաջին անգամ դարձավ համապետական գործ, զարգացավ ազատ ու համակողմանի։ Տակավին 1921 թ. հունիսին Հայաստանի ժողկոմխորհի դեկրետով հիմնադրվեց մեր գրչության անդրանիկ պետական հրատարակչությունը՝ «Հայպետհրատը», որը տասնամյակներ շարունակ հսկայական դեր է խաղացել սովետահայ ողջ մշակույթի զարգացման ու հարստացման գործում, մեր բազմադարյան հոգևոր արժույթները դուրս բերել քաղաքակրթության լայն ասպարեզ։ Սովետական իշխանության տարիներին գրահրատարակչության զարգացման աննախադեպ տեմպերի վկայությունն է թեկուզ այն փաստը, որ այդ ժամանակամիջոցում հանրապետությունում լույս է ընծայվել ավելի քան 45 հազար անուն գիրք՝ 320 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով։

Գրահրատարակչությունը հանրապետությունում զարգացել է ամենաբազմապիսի ուղղություններով։ Անցած ողջ ժամանակաշրջանում մեր գրահրատարակիչների գործունեության գլխավոր ուղղությունը եղել է մարքս-լենինյան անմահ ժառանգության հրատարակումը մայրենի լեզվով և համակողմանի պրոպագանդումը։ Վ. Ի. Լենինի հայ զինակիցների, մեր մշակույթի անմոռաց երախտավորների անդուլ ջանքերով հայ աշխատավորը լայնորեն հաղորդակցվեց դարաշրջանի ամենահեղափոխական ուսմունքին՝ մարքսիզմ-լենինիզմին, մայրենի լեզվով ուսումնասիրեց Կ. Մարքսի հանճարեղ Կապիտալը, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, նրանց շատ ու

շատ աշխատություններ, լենինյան գրական ողջ ժառանգությունը։ Սովետական իշխանության տարիներին Կ. Մարքսից և Ֆ. Էնգելսից հայերեն տպագրվել են 120 անուն աշխատություն՝ ավելի քան 750 հազար օրինակ տպաքանակով։ Լենինի աշխատությունները լույս են տեսել մոտ 430 անգամ՝ ավելի քան 2,5 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով։ Ընթերցողն արդեն ստացել է Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի 5-րդ հրատարակության 40-րդ հատորը, իսկ ամբողջական հրատարակությունը կավարտվի 1983 թվականին։ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի հետ մեկտեղ նախապատրաստական լայն աշխատանքներ են տարվում Կապիտալի նոր հրատարակության, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Երկերի 20-հատորյակի լույսընծայման նպատակով։

Հանրապետության կուսակցական կազմակերպության և մեր ժողովրդի գաղափարական ու հոգևոր կյանքում կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների մասսայական հրատարակությունը։ Արդեն մայրենի լեզվով ընթերցողի սեղանին են դրվել Լենինյան կուրսով բազմահատոր աշխատության 8-րդ հատորը, Գաղափարախոսական աշխատանքի ակտուալ պրոբլեմները երկհատորյակը, Մալայա Զեմլյա, Խոպան, Վերածնունդ, Հուշեր քառագրությունը։ Ժամանակին, պոլիգրաֆիական կատարման բարձր մակարդակով և մասսայական տպաքանակով լույս ընծայվեցին ՍՄԿԿ XXVI և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարների նյութերը, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառերը, ելույթները, սովետական ու արտասահմանյան մամուլի օրգաններին տված պատասխանները։

Միշտ էլ հանրապետության գրահրատարակիչների ուշադրության կենտրոնում է եղել Վ. Ի. Լենինի հայ զինակիցների գրական ժառանգության հրատարակման գործը։ Ընթերցողն արդեն ստացել է բոցաշունչ հեղափոխական, մարքսիզմի խոշոր տեսաբան Ստ. Շահումյանի երկերի հինգհատորյակը։ Լույս են տեսել Ս. Սպանդարյանի, Բ. Կնունյանցի, Ա. Մյասնիկյանի, Ս. Տեր-Գաբրիելյանի, Ա. Բեկզադյանի, Ա. Ամիրյանի, Ա. Մելիքյանի և ուրիշների հոդվածների, ճառերի ու փաստաթղթերի ժողովածուները։ Շուտով «Հայաստան» հրատարակչությունը ձեռնամուխ կլինի Ա. Մյասնիկյանի երկերի հինգհատորյակի, Ս. Սպանդարյանի երկհատորյակի, Կամոյի և մյուս հայ լենինյանների ընտիր երկերի հրատարակությանը։

Այժմ հանրապետության գրահրատարակիչների գաղափարաքաղաքական գործունեության առանցքը ՍՄԿԿ XXVI և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարների որոշումների պրոպագանդումն է, նրանց առաջադրած ժողովրդատնտեսական, գաղափարական ու մշակութային խնդիրների բազմակողմանի լուսաբանումը։ ՍՄԿԿ համագումարների, գաղափարական հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներին համապատասխան ստեղծվել են էկոնոմիկայի, սոցիալիստական ապրելակերպի, աշխատավորների ինտերնացիոնալ ու աթեիստական դաստիարակության, բուրժուական գաղափարախոսության քննադատության գրականության մի շարք մատենաշարեր։ Այժմ առավել, քան երբևէ, հրատարակչական պլաններում ծանրակշիռ տեղ է գրավում գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, էկոնոմիկայի ինտենսիվացմանը, արտադրական պոտենցիալի ռացիոնալ օգտագործմանը, խնայողության և աշխատանքի որակի բարելավմանը վերաբերող գրականությունը։

Ներկայումս հրատարակչական պլանները վերանայվում են ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի (1982 թ.), պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ առաջադրված դրույթների ու հետևությունների լույսի ներքո, այն նպատակով, որ գրահրատարակչությունն ակտիվ մասնակցի կուսակցության պարենային ծրագրի հաջող կենսագործմանը։

Այդ առումով առավել ուշադրություն հարկ է նվիրել կուսակցության առաջադրած պլանների կատարման գործում առաջավոր փորձի պրոպագանդմանը, կուսակցական, սովետական, արհմիութենական կազմակերպությունների արդյունավետ գործունեությունն արտացոլող նյութերի հրատարակմանը։



Այս տարի մեր հայրենիքի ժողովուրդները մեծ շուքով նշելու են ՍՍՀՄ կազմավորման պանծալի 60-ամյակը։ Այդ պատմական տարելիցի առթիվ հրապարակվում են կուսակցության լենինյան ազգային քաղաքականությանը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությանն ու համագործակցությանը, նրանց տնտեսական, սոցիալական ու կուլտուրական վերելքին նվիրված մի քանի տասնյակ հասարակական-քաղաքական, գեղարվեստական ու մանկական երկեր։

Անցած ժամանակաշրջանում գրահրատարակչական գործի խոշոր նվաճումներից մեկը, անշուշտ, հանրագիտական գրականությունն է։ Հայկական սովետական հանրագիտարանը լույս է տեսնում 100 հազար օրինակ տպաքանակով, որի 7-րդ հատորն արդեն հանձնվել է բաժանորդներին։ Ընթացիկ հնգամյակում ՀՍՀ-ի հերթական հատորների հրատարակությանը զուգընթաց լույս կտեսնեն մանկական եռահատոր հանրագիտարանը, սովետական մեծ հանրագիտարանի հանրագիտական բառարանը, պոլիտեխնիկական բառարանը և մի շարք այլ բառարաններ։ 1986 թվականից կսկսվի պատմական հուշարձանների հավաքածուի 10 հատորյակի հրատարակությունը՝ յուրաքանչյուրը 100 մամուլ ծավալով։ Հանրագիտարանի գլխավոր խմբագրությունը նախապատրաստական մեծ աշխատանքներ է կատարում մայրենի լեզվով ճյուղային հանրագիտարաններ ստեղծելու ասպարեզում։

Սովետական իշխանության տարիներին ծաղկել է սովետահայ գեղարվեստական ու մանկական գրականությունը։ Եթե նախասովետական շրջանում հայ գրողների ստեղծագործությունները գերազանցապես հրատարակվում էին հայրենիքից դուրս, աշխարհի չորս ծագերում, Փարիզում ու Ժնևում, Վենետիկում ու Բեյրութում, Լոս Անժելոսում և այլուր, և այն էլ խիստ սահմանափակ տպաքանակներով ու, բնականաբար, չէին կարող բավարարել հարազատ ժողովրդի պահանջները, ապա ազգային վերածննդի հետ մեկտեղ, հենց մայր հայրենիքում վերածնվեց, աննախադեպ տեմպերով բարգավաճեց մեր բազմադարյան գրականությունը։ Չէ՞ որ սովետահայ գրականության ակունքների մոտ կանգնած էին այնպիսի հայրենասեր գործիչներ, գեղարվեստական խոսքի այնպիսի հսկաներ, որպիսիք էին՝ Հովհ. Թումանյանն ու Ավ. Իսահակյանը, Վ. Տերյանն ու Շիրվանզադեն, հեղափոխական վերակերտումների բոցաշունչ երգիչ Ե. Չարենցն ու Ա. Բակունցը և մեր շատ ու շատ այլ մեծեր։ Կոմունիստական կուսակցության և սովետական պետության հոգատարության, նրանց ընձեռած հնարավորությունների շնորհիվ մեր գեղարվեստական խոսքի անցյալի ու ներկայի մեծարժույթ գործերը դարձան ժողովրդի սեփականությունը, դուրս եկան ազգային շրջանակներից, մտան սովետական բազմազգ գրականության ինտերնացիոնալ գանձարանը։

Հանրապետությունում գրահրատարակչական գործի բուռն զարգացման վառ վկայություններից է և այն, որ Սովետական Հայաստանում հայ գրողների ստեղծագործությունները հրատարակվել են մոտ յոթ հազար անգամ՝ ավելի քան 60 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով։ Եթե նախկինում հայ գրողների գործերը տպագրվում էին մի քանի տասնյակից մինչև մի քանի հարյուր օրինակ, ապա այսօր 30, 50, 100 հազար օրինակի բնագիծը կարծես դարձել է սովորական, ոչ ոքի չզարմացնող երևույթ։ Նշենք, որ 1913 թվականին Հայաստանում լույս է ընծայվել 55 անուն գիրք ու բրոշյուր՝ ընդամենը 80 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով, մինչդեռ միայն Հովհ. Թումանյանի մանկական գործերը, և այն էլ օտար լեզուներով, մեզ մոտ լույս են ընծայվել 100—110 հազար օրինակ տպաքանակով։

Աշխատավորների գեղագիտական դաստիարակության, նրանց հոգևոր հարաճուն պահանջմունքների բավարարումն ինչպես հարկն է կազմակերպելու նպատակով անընդհատ կատարելագործվում է գեղարվեստական ու մանկական գրականության հրատարակության գործը, ընդլայնվում են այդ գրականության ծավալները։ Այդ բնագավառում աշխատանքները նոր հունի մեջ մտան մասնագիտացված «Սովետական գրող» հրատարակչության ստեղծումից հետո, ուր և հիմնականում կենտրոնացված է գեղարվեստական ու մանկական գրականության հրատարակությունը։

Դասական ու ժամանակակից հայ գրողների առանձին գործերի լույսընծայմանը զուգընթաց «Սովետական գրողը» հրատարակում է նրանց երկերի ամբողջական ժողովածուներն ու հատընտիրները. ստեղծվել են այդպիսի մի շարք մատենաշարեր, որոնք լավ ընդունելություն են գտել ընթերցողների շրջանում: Հայ դասականների գրադարան, Հայ մատենագիրներ, Սփյուռքահայ գրողներ մատենաշարերով արդեն լույս են տեսել Հ. Պարոնյանի, Ե. Օտյանի, Դ. Վարուժանի, Պ. Դուրյանի, Գ. Սունդուկյանի, Մ. Մեծարենցի, Հովհ. Թումանյանի, Րաֆֆու, Ավ. Իսահակյանի, Վ. Տերյանի, Պ. Սևակի և ուրիշների երկերի ժողովածուները, մեր մշակույթի մեծերի տասնյակ ու տասնյակ առանձին գործեր: Ներկայումս ընթացքի մեջ է Մ. Նալբանդյանի, Ստ. Զորյանի, Ա. Բակունցի, Դ. Դեմիրճյանի, Վ. Փափազյանի, Ն. Զարյանի, Հովհ. Շիրազի, Ս. Խանզադյանի, Վ. Դավթյանի, Վ. Պետրոսյանի և մի շարք այլ գրողների երկերի ժողովածուների և ընտրանիների հրատարակությունը:

Ինչպես միշտ, արդի էտապում հատկապես, կուսակցությունը և կառավարությունը մեծ նշանակություն են տալիս մատաղ սերնդի գեղագիտական դաստիարակությանը, պահանջում են սիստեմատիկաբար ընդլայնել մանկապատանեկան գրականության ծավալները, բարելավել դրա գեղարվեստական ու պոլիգրաֆիական կատարման որակը: Հանրապետության հրատարակչությունները, մասնավորապես «Սովետական գրողը» և «Լույսը», լուրջ աշխատանք են կատարել այդ ասպարեզում: Դպրոցականի գրադարան, Նշանավոր մարդկանց կյանքը, Հանուն բարեկամության, Բնությունը և մենք և մի շարք այլ մատենաշարերով արդեն լույս են տեսել հարյուրավոր գրքեր՝ մասսայական տպաքանակներով: Միայն «Սովետական գրող» հրատարակչությունն ամեն տարի լույս է ընծայում 100 անուն մանկապատանեկան գրականություն՝ ավելի քան 2 միլիոն օրինակ տպաքանակով: Հրատարակչությունն ստեղծել է նոր՝ Արկածային գրադարան մատենաշարը՝ 20 հատորով, յուրաքանչյուրը 50 հազար օրինակ տպաքանակով: Մայրենի լեզվով, մեծ տպաքանակներով լույս են ընծայվել ռուս և սովետական մյուս ժողովուրդների ու արտասահմանյան համարյա բոլոր նշանավոր մանկագիրների շատ ու շատ գործեր:

Դարավոր բարեկամությամբ են զոդված ո՛չ միայն հայ և ռուս ժողովուրդները, այլև նրանց գրականությունները: Հայ գրողները բարձր են գնահատել և միշտ էլ ջերմությամբ են արտահայտվել ռուս գրականության, դրա բարերար ազդեցության մասին: XIX և XX դարերի հայ գրականության դասականները, մեր մշակույթի շատ ու շատ տաղանդավոր գործիչներ թարգմանել և հայ ժողովրդի սեփականությունն են դարձրել Պուշկինի, Լերմոնտովի, Չերնիշևսկու, Գերցենի, Բելինսկու, Դոբրոլյուբովի, Լ. Տոլստոյի, Չեխովի, Գորկու, Ա. Տոլստոյի, Շոլոխովի, Ֆադեևի և շատ ուրիշների գործերը: Սովետական իշխանության տարիներին ռուս հեղինակների ստեղծագործությունները մեր հանրապետությունում հրատարակվել են մոտ 1.450 անգամ՝ ավելի քան 12 միլիոն ընդհանուր տպաքանակով: Ռուս դասականների գրադարան, Ռուս սովետական բանաստեղծներ մատենաշարերով լույս են ընծայվել տասնյակ հեղինակների լավագույն գործերը: Մեծ տպաքանակներով հրատարակվել և հայ ընթերցողին են ներկայացվել ո՛չ միայն ռուս դասականների գործերը, այլև ժամանակակից ռուս գրողների լավագույն ստեղծագործությունները, հատկապես լենինյան և ՍՍՀՄ պետական մրցանակի արժանացած ստեղծագործությունները:

Հայերեն թարգմանվել և մասսայական տպաքանակներով հրատարակվել են ՍՍՀՄ եղբայրական մյուս ժողովուրդների գրողների լավագույն ստեղծագործությունները: Դա մեծապես նպաստել է ազգային կուլտուրաների զարգացման, դրանց մերձեցման ու փոխադարձ հարստացման՝ կուսակցության ծրագրային պահանջների կենսագործմանը:

Սովետահայ գրահրատարակիչները մեծ ավանդ ունեն համաշխարհային գրականության դասական ստեղծագործությունները հարազատ ժողովրդի սեփականությունը դարձնելու գործում: Անցած ժամանակաշրջանում մեզ մոտ թարգմանվել ու հրատարակվել են արտասահմանյան հեղինակների 930 գործ՝ 12 միլիոն 400 հազար ընդհանուր տպաքանակով:



Մեր ժողովրդի հոգևոր մշակույթի շատ գլուխգործոցներ, պատմական հանգամանքների բերումով, անհայտ էին մնացել քաղաքակիրթ աշխարհին: Սովետական իշխանության տարիներին, գրահրատարակչական գործի զարգացմանը զուգընթաց, արվեստի ու գրականության մեր լավագույն նմուշները հրատարակվեցին ռուսերեն և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների, ինչպես նաև արտասահմանյան ժողովուրդների լեզուներով: Հայկական զարդարվեստի ու մանրանկարչության, սովետահայ նկարիչների ալբոմները, Դավիթ Անհաղթի, Նարեկացու և Քուչակի, Սայաթ-Նովայի, անցյալի ու ներկայի մեր մյուս երախտավորների գործերը հրատարակվեցին ռուսերեն և շատ այլ լեզուներով: Աշխարհի շատ լեզուներով թարգմանվել է մեր անմահ էպոսը՝ «Սասունցի Դավիթը»: Այժմ արտասահմանյան գրահրատարակչական շատ ֆիրմաներ ես գործնական քայլեր են կատարում արվեստի ու գրականության մեր կոթողներն իրենց մոտ հրատարակելու միտումով:

Գրահրատարակչական գործի անխզելի բաղկացուցիչ մասը հանրակրթական դպրոցները, բուհերը, տեխնիկումներն ու պրոֆտեխնիկական ուսումնարաններն անհրաժեշտ դասագրքերով և ուսումնամեթոդական ձեռնարկներով ապահովելն է: Ամեն տարի միայն «Լույս» հրատարակչությունը թողարկում է մոտ 200 անուն ուսումնական և ուսումնամեթոդական գրականություն՝ 5 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով: Ուսումնական գրականության գործը նորովի ծավալվեց դասագրքերը ֆոնդավորելու և դրանք աշակերտներին անվճար բաշխելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հայտնի որոշումից հետո: Կուսակցության առաջադրանքները հաջողությամբ կենսագործելու նպատակով արդեն կայունացվել է դասագրքերի ավելի քան 80 տոկոսը, մոտ 40 անուն դասագիրք հրատարակվում է գունավոր տպագրությամբ, սահմանված ժամկետներին ինչպես հարկն է ֆոնդավորվում են դպրոցական դասագրքերը:

Մեր հրատարակչությունները դասագրքերով ապահովում են ո՛չ միայն հանրապետության դպրոցները, ուսումնարաններն ու բուհերը, այլև եղբայրական Ադրբեջանում, Վրաստանում և ՌՍՖՍՀ-ի տարբեր շրջաններում գործող հայկական դպրոցները: Դասագրքեր են հրատարակվում նաև սփյուռքահայ դպրոցների համար, որոնք առաքվում են Սիրիա, Լիբանան, Իրաք, Պարսկաստան, Ֆրանսիա, ԱՄՆ, Կանադա և այլուր:

Հանրապետության գրահրատարակչական գործի զարգացման բնագավառում իրենց լուրջ ավանդն ունեն Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի և Երևանի պետական համալսարանի հրատարակչությունները, որոնք բեղմնավոր աշխատանք են ծավալում հատկապես հայ գիտնականների գործերի, հայ գրողների երկերի, գրական հուշարձանների, բուհական դասագրքերի և գրականության այլ տեսակների հրատարակման բնագավառում:

Գրահրատարակչական գործի նման մասշտաբները, անշուշտ, պայմանավորված են պոլիգրաֆիական բազայի ընդլայնմամբ, արտադրության մեջ նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրմամբ, պոլիգրաֆիական կադրերի մասնագիտական որակավորման բարձրացմամբ:

Վերջին տարիներին նկատելիորեն հզորացել է հանրապետության պոլիգրաֆարդյունաբերության նյութատեխնիկական բազան, կառուցվել ու վերակառուցվել են մի շարք տպարաններ, որոնք հագեցվել են հայրենական ու արտասահմանյան նորագույն տեխնիկայով: Միայն անցած հնգամյակում սիստեմի ձեռնարկությունների հզորություններն ավելացան 220 միլիոն ներկ-օտիսկով, և մենք այժմ ունենք մոտ 660 միլիոն ներկ-օտիսկի կամ 457 միլիոն թերթ-օտիսկի հզորություններ, որոնք լիովին բավարարում են մեր հրատարակչությունների պահանջարկը:

Հզորությունների այդ աճի մեջ վճռական նշանակություն ունեցավ 180 միլիոն ներկ-օտիսկով գունավոր տպագրության տպարանի շահագործումը, որը հագեցված է ժամանակակից առաջնակարգ տեխնիկայով:

Պոլիգրաֆ հզորությունների այդպիսի աճը հնարավորություն ընձեռեց ո՛չ միայն հաջողությամբ կատարելու պետական առաջադրանքները, ընդլայ-

նելու հրատարակչական գործի մասշտաբները, այլև էապես բարելավելու թողարկվող արտադրանքի որակը։ Դրա լավագույն ապացույցն այն գնահատականներն են, որոնց արժանացել է հայ գիրքը Մոսկվայում պարբերաբար կազմակերպվող համաշխարհային տոնավաճառ-ցուցահանդեսներում, Փարիզի, Մոնրեալի, Բուենոս Այրեսի, Պրագայի, Լայպցիգի, Լոս Անջելոսի, Տոկիոյի և այլ վայրերում կազմակերպված գրքի ցուցահանդեսներում։

Պոլիգրաֆիական բարձրարժեք կատարմամբ հրատարակվել են Գ. Նարեկացու Մատյան ողբերգությունը, Քուչակի Հարյուր ու մեկ հայրենը, Խ. Աբովյանի Վերք Հայաստանին, Հայ դասական պոեզիան, Պ. Սևակի Անլռելի զանգակատունը, Վասպուրականի մանրանկարչությունը, Հայկական զարդարվեստը, Մարտիրոս Սարյան ալբոմը, Գ. Խանջյանի Վարդանանքը և այլ գրքեր ու ալբոմներ։

Հրատպետկոմի սիստեմի կարևոր օղակներից է թողարկվող արտադրանքի վաճառքի կազմակերպումը։ Գրահրատարակչական գործի մասշտաբների ընդլայնմանը զուգահեռ զգալիորեն զարգացել է նաև գրքի առևտուրը։ Բավական է ասել, որ եթե 1975 թվականին գրքային արտադրանքի ապրանքաշրջանառության ծավալը եղել է 9,75 միլիոն ռուբլի, ապա 1980 թ. այն արդեն հասավ ավելի քան 15 միլիոն ռուբլու։ Գրականության վաճառքի աճին զգալիորեն նպաստեցին նաև գրքի պրոպագանդման ու տարածման նպատակով ձեռնարկված գործնական միջոցառումները։ Մեզ մոտ արդեն ավանդույթ են դարձել գիտատեխնիկական, ուսումնամանկավարժական, մանկապատանեկան գրականության տարածման միամսյակներն ու տասնօրյակները, եղբայրական հանրապետությունների և սոցիալիստական երկրների գրականության տասնօրյակները, փոխադարձաբար կազմակերպվող ցուցահանդեսները և այլն։

Ինչպես նշվեց, գրահրատարակչության մարզում մեր հանրապետությունում կատարվել է մեծ ու բեղմնավոր աշխատանք։ Այնուհանդերձ մեր աշխատանքներում առկա են թերություններ ու վրիպումներ, որոնց մասին շատ հստակ ասվեց ՀԿԿ XXVII համագումարում։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն 1981 թ. հունիսին, անդրադառնալով սիստեմում տեղ գտած պետական կարգապահության խախտումների, սուբյեկտիվիզմի ու չարաշահումների փաստերին, կոնկրետ միջոցառումներ մշակեց դրությունը շտկելու, գրահրատարակչական գործը ժամանակակից պահանջների մակարդակին համապատասխանեցնելու նպատակով։ Մասնավորապես նշվեց, որ հրատարակչությունների թեմատիկ պլանները ոչ միշտ են կազմվում այնպես, որ հրատարակվող քաղաքական, գիտական-գեղարվեստական գրականությունը լիովին համապատասխանի արդի պահանջներին։ Այդ գործում դեռևս վերացված չէ սուբյեկտիվ վերաբերմունքը։ Երբեմն հարկ եղած կուսակցական սկզբունքայնությունն ու պահանջկոտությունը չեն դրսևորվում ձեռագրերի ընտրության գործում, որի հետևանքով լույս են տեսնում գաղափարական վրիպումներ պարունակող, գեղարվեստական ցածր մակարդակ ունեցող առանձին գրքեր։

Եվ, իրոք, պետական ու աշխատանքային կարգապահության ցածր մակարդակը, առանձին պաշտոնատար անձանց կողմից իրենց դիրքի չարաշահումը, սուբյեկտիվիզմն ու կամայականությունները բացասաբար են անդրադարձել գրահրատարակչական ողջ գործի վրա։

Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի և ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի որոշումներից հետո Հրատպետկոմում և սիստեմի օղակներում բավականին աշխատանք է կատարվել դրությունը շտկելու, այդ որոշումների պահանջների ոգով հրատարակչական սիստեմի գործունեությունը վերակառուցելու մարզում։ Կատարելագործվել է թեմատիկ պլանավորումը, բարձրացել է կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, պետական առաջադրանքների կատարումը դարձել է սիստեմատիկ։

Փաստ է, սակայն, որ հրատարակչական պլաններում դեռևս լիովին հաղթահարված չէ նվազ հրատապ և նեղ մասնագիտական թեմատիկան, երբեմն լույս աշխարհ են գալիս մակերեսային, գիտության ու գրականության հետ եզրեր չունեցող, հնաբույր, արդի պահանջներին չհամապատասխանող որոշ գործեր։ Կան հրատարակչություններ, որ իրենց պլաններն անհարկի ուռճաց-



նում են հնագույն պատմությանը վերաբերող հաստափոր աշխատություններով՝ ի վնաս նորագույն պատմության հրատապ պրոբլեմների մշակման։

Հրատարակչական մարմիններն իրավացի քննադատվել են գրականության սահմանված համամասնությունները չպահպանելու, մասնավորապես գեղարվեստական ու մանկական գրականության հրատարակման ոլորտի թերությունների համար։ Հաշվի առնելով այդ՝ 1981 թ. Հրատպետկոմը միջոցներ ձեռնարկեց վիճակը շտկելու համար։

Լրջորեն անհանգստացնող է թողարկվող արտադրանքի մասսայական տպաքանակի գեղարվեստական ու պոլիգրաֆիական կատարման որակը։ Գրահրատարակիչները երբեք չպետք է մոռանան, որ գիրքն ստեղծվում է դարերի համար։ Մենք ունենք պոլիգրաֆիական ժամանակակից առաջնակարգ տեխնիկա, նկարիչների ու պոլիգրաֆիստների որակյալ կադրեր, որոնք, իրոք, ստեղծել են բարձրարժույթ առանձին գործեր։ Հրատպետկոմը մշակել է մի շարք կոնկրետ միջոցառումներ թողարկվող ամբողջ արտադրանքի և հատկապես դպրոցական դասագրքերի ու մանկապատանեկան գրականության գեղարվեստական ու պոլիգրաֆիական կատարման մակարդակը բարձրացնելու համար։ Բնավ չպետք է մոռանալ, որ հրատարակչական գործում մանրուքներ չկան։ Կարևոր նշանակություն ունի նոր, խնայողաբեր տառատեսակների մշակումն ու լայն օգտագործումը։ Ցավոք, տառատեսակների տնտեսությունում դեռ ամեն ինչ բարվոք չէ. նկատելի են թերություններ, տառատեսակների պակաս, միօրինակություն։

Սակայն հարկ է նկատել, որ լուրջ թերություններ կան պոլիգրաֆիական ձեռնարկությունների գործունեության մեջ։ Անբավարար են օգտագործվում եղած հզորություններն ու ռեզերվները։ Անհանդուրժելի է, որ մեր մի շարք տպարաններում տարիներ շարունակ անարդյունավետ են օգտագործվել բարձր արտադրողական, թանկարժեք սարքավորումները։ Դեռևս ցածր է գրքի առևտրի կուլտուրան, արդյունավետ պայքար չի կազմակերպվում չարաշահումների և գրավաճառ ցանցում տեղ գտած բացասական այլ երևույթների դեմ։

Մեծ ու պատասխանատու են հանրապետության գրահրատարակիչների առջև ծառացած խնդիրներն արդի էտապում։ Հարցերի հարցը այսօր ՍՄԿԿ XXVI համագումարի, կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշումների ու ցուցումների, պարենային ծրագրի համակողմանի պրոպագանդան է։ Գըլխավորն այժմ ո՛չ միայն պլանավորված գրականության ժամանակին լույսընծայումն է, այլև այդ գրականության գաղափարաքաղաքական բարձր մակարդակի ապահովումը, արծարծվող հարցերի խորությունը, գիտականությունը, գեղարվեստական մակարդակը, հանրամատչելիությունը։ Գրահրատարակիչները քաջ գիտակցում են, որ կուսակցության գաղափարական բազմաբեղուն գործունեության շնորհիվ փոխվել է մեր ընթերցողը, փոխվել են նրա ճաշակն ու պահանջմունքները և մատուցման հին ձևերն ու մեթոդները, շաբլոնն այլևս չեն կարող գոհացնել նրան։

Հրատարակչության աշխատողը կուսակցության գաղափարական մարտիկն է։ Գործի նկատմամբ նրա ստեղծագործական վերաբերմունքով, մասնագիտական փորձով, հեղինակների հետ աշխատակցելու, ձեռագիրը մշակելու, հրատարակման նախապատրաստելու նրա ունակությամբ է մեծապես պայմանավորված այն իրողությունը, թե ինչպիսի գիրք կստանա ընթերցողը։

1982 թվականը յուրահատուկ տարի է մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների, բոլոր ազգերի ու ազգությունների համար։ Մենք պատրաստվում ենք տոնելու Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակը, պանծալի մի տարելից, որը կդառնա ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության, կոմունիստական կուսակցության վարած լենինյան ազգային քաղաքականության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հաղթանակի մի նոր վառ դրսևորում։ Ինչպես սովետական բոլոր մարդիկ, նույնպես և մեր հանրապետության գրահրատարակիչներն այդ տարելիցը դիմավորում են բեղմնավոր գործերով, կուսակցության առաջադրանքները կատարելու պատրաստակամությամբ։

արժողությամբ հոսքային գիծ, արհեստանոցները համալրել հաստոցներով և այլ սարքերով։ Այդ ամենի շնորհիվ սովորողների համար ստեղծվել են պատշաճ պայմաններ արտադրական ուսուցումը գիտատեխնիկական բարձր մակարդակով ապահովելու համար։ Սովորողներն իրենց արհեստանոցներում արտադրական ուսուցման պրոցեսում տարեկան թողարկում են 850 հազար ռուբլու համախառն արտադրանք։ Ուսումնարանը Տոլյատիի ավտոգործարանին տարեկան մատակարարում է «Ժիգուլի» ավտոմեքենայի հինգ միլիոն լամպեր։ Նշենք, որ սովորողները թողարկում են բարձրորակ լամպեր և ավտոգործարանից չեն ստացել ոչ մի բողոք։

№ 11 ուսումնարանին լուրջ օգնություն է ցույց տալիս Երևանի «Էլեկտրոն» արտադրամիավորումը (գլխավոր դիրեկտոր՝ Ա. Ա. Նաիրյան)։ Ուսումնարանին տրամադրվել են 350 հազար ռուբլու արժողությամբ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ։ Միավորման կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպության օգնությամբ ուսումնարանում ստեղծված է հաշվողական կենտրոն։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների այս ուսումնարանը տարեկան պատրաստում է միջնակարգ կրթությամբ 450 երիտասարդ որակյալ բանվորներ։ Բացի այդ, ուսումնարանը տարեկան վերապատրաստում է շուրջ 350 մասնագետներ այն գործարաններից, որոնք ստանում են «Էլեկտրոն»-ի մեքենաները և կարիք ունեն տեխնիկական ուսուցման՝ հաշվիչ մեքենաներն արդյունավետ օգտագործելու համար։ Ուսումնարաններին օգնում է Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը (գլխավոր դիրեկտոր՝ Թ. Ն. Ենգոյան)։ Շատ կարևոր է, որպեսզի բոլոր բազային ձեռնարկությունները, նրանց ղեկավարներն առավել հոգան պրոֆեսիոնալ դպրոցի կարիքները, խորամուխ լինեն նրանց հոգսերի ու պահանջների մեջ։

Ուսումնարանում կենտրոնական դեմքը դասատուն է, արտադրական ուսուցման վարպետը։ Եվ օրինաչափ է, որ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգի աշխատողները պատշաճ ուշադրություն են նվիրում ինժեներամանկավարժական կադրերի պատրաստման և ընտրության հարցերին։ Պրոֆտեխնիկական ուսումնարանների հանրակրթական և մասնագիտական առարկաների դասատուներն ունեն համապատասխան բարձրագույն կրթություն։ Ուսումնարաններում աշխատում են 2.200 արտադրական ուսուցման վարպետներ, որոնցից 650-ը ինժեներներ են։ Մյուս վարպետներն ունեն միջնակարգ մասնագիտական կրթություն և մասնագիտական աշխատանքի հարուստ փորձ։ Երկարամյա և անբասիր մանկավարժական գործունեության համար 92 դասատուներ ու արտադրական ուսուցման վարպետներ արժանացել են Հայկական ՍՍՀ վաստակավոր ուսուցչի և պրոֆտեխնիկական կրթության վաստակավոր վարպետի պատվավոր կոչման։ Հիշատակության արժանի շատ աշխատողներ ունի մեր պրոֆեսիոնալ դպրոցը։ Հանրապետության պրոֆտեխկրթության վաստակավոր վարպետ, ինժեներ-քիմիկոս Թամար Սարգսյանը 35 տարի է, ինչ աշխատում է Երևանի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր № 2 տեխնիկական ուսումնարանում որպես քիմիկոս-լաբորանտների խմբի արտադրական ուսուցման վարպետ։ Անբասիր աշխատանքի մոտ 40 տարիներին վաստակաշատ ինժեներ-վարպետը հանրապետության քիմիական արդյունաբերության համար պատրաստել է ավելի քան 750 քիմիկոս-լաբորանտներ։ Նրանցից շատերը դարձել են արտադրության հրամանատարներ, կոմունիստական աշխատանքի առաջավորներ և ամենուրեք բարձր են պահում իրենց վարպետի անունն ու գործը։ Նրանք հպարտությամբ են ասում՝ «Մենք անվանի վարպետ Թամար Սարգսյանի սաներն ենք»։ Վաստակաշատ վարպետը պարգևատրված է Լենինի ու Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով։ Անվանի վարպետների համբավ են վայելում նաև Հմայակ Քեչյանը, Աշոտ Դավթյանը, Իշխան Գրիգորյանը, Հովհաննես Բեզերչյանը և շատ ուրիշներ, որոնք այսօր հանրապետության երիտասարդության պրոֆեսիոնալ ուսուցման և կոմունիստական դաստիարակության շնորհակալ գործի առաջատարներ են։

Անցած 60 տարիներին հանրապետության պրոֆեսիոնալ դպրոցի շրջանավարտներից շատերը դարձել են արտադրության անվանի հրամանատարներ,



արժանացել սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։ Դրանց թվում են Լենինականի երկաթուղային ուսումնարանի շրջանավարտներ Անդրանիկ Խաչատրյանը, Սարգիս Գևորգյանը, Ախուրյանի գյուղմեխանիզացիայի ուսումնարանի շրջանավարտներ, անվանի մեխանիզատորներ, սոցիալիստական աշխատանքի հերոսներ Քերոբ Քերոբյանը, Հակոբ Մինասյանը, Հոկտեմբերյանի ուսումնարանի նախկին սան, սոցիալիստական աշխատանքի հերոս Գեղեցիկ Կարապետյանը, մեխանիզատոր Աշոտ Նիկոյանը, Երևանի № 1 տեխնիկական ուսումնարանի շրջանավարտ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռոլանդ Մովսիսյանը, Ղափանի ուսումնարանի շրջանավարտներ, սոցիալիստական աշխատանքի հերոսներ Աշոտ Մելքոնյանը, Գառնիկ Մանասյանը և ուրիշներ։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը Երևանում Սովետական Հայաստանի 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած ճառում շատ բարձր գնահատեց հանրապետության բանվոր դասակարգի գործունեությունը։ «Պարզ է, որ այսպիսի բարձրորակ արտադրանք կարելի է թողարկել միայն այնպիսի ձեռնարկություններում, որոնք տեխնիկական զինման բարձր մակարդակ ունեն։ Պարզ է նաև, որ այդպիսի մեքենաներ, ապարատներ և սարքեր կարող է ստեղծել միայն բարձր որակավորում ունեցող բանվոր դասակարգը, որը լայն գիտելիքներ և լայն մտահորիզոն ունի։ Հայաստանի բանվոր դասակարգի՝ մեր երկրի բանվոր դասակարգի պանծալի ջոկատի, կազմավորումը սոցիալիզմի կարևորագույն նվաճումն է» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 228)։ Հիրավի, հանրապետության բանվոր դասակարգի կազմավորման գործում իր ավանդն ունի մեր կուռ համակարգը, որը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար պատրաստել և պատրաստում է անհրաժեշտ թվով բարձրորակ կադրեր։

Հայաստանի պրոֆեսիոնալ դպրոցի ինժեներամանկավարժական կադրերը մեծ տարելիցը՝ ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը, դիմավորում են ուսումնադաստիարակչական գործունեության լավագույն ցուցանիշներով։ Հաջողությամբ եզրափակվեց պրոֆեսիոնալ կրթության ցանցի զարգացման տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարին։ Սոցիալիստական պարտավորությունները կատարվում են նաև ընթացիկ տարում։ Գերազանցված են ուսումնարանների ընդունելության առաջին կիսամյակի առաջադրանքները։ Մինչև օգոստոսի վերջը կկատարվեն նաև ուսումնարանների կոմպլեկտավորման տարեկան պլանները։ Այս տարի ուսումնարանները կավարտեն և արտադրական աշխատանքի կանցնեն ավելի քան 30 հազար պատանիներ ու աղջիկներ։ Կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների, բազային ձեռնարկությունների ղեկավարների ու կոլեկտիվների պարտքն է ինչպես հարկն է ընդունել երիտասարդ բանվորներին, նրանց պրոֆեսիոնալ աճի համար ստեղծել բոլոր անհրաժեշտ պայմանները։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության հետագա զարգացման լավագույն հեռանկարներ են բացված տասնմեկերորդ հնգամյակում։ Հանրապետության պրոֆտեխնիկական ուսումնարանները հնգամյակի ընթացքում ընդունելու են 180 հազար պատանիներ ու աղջիկներ, ուսումնարաններն ավարտելու և արտադրական աշխատանքի են անցնելու 150 հազար երիտասարդ բանվորներ։ Դա զգալի չափով ավելի է տասներորդ հնգամյակի տվյալներից։ Շարունակվելու է ուսումնական համալիրների շինարարությունը, որի համար հատկացված է 25 միլիոն ռուբլի։ Արդյունաբերական շինարարության և գյուղական շինարարության մինիստրությունները պատշաճ ուշադրություն պետք է նվիրեն պրոֆտեխնիկական ուսումնարանների շինարարությանը, որպեսզի սահմանված ժամկետներին և որակով կառուցվեն ուսումնական համալիրները։ Փաստ է, որ այդ մինիստրությունների անբավարար ուշադրության հետևանքով անցյալ հնգամյակում չկատարվեցին պրոֆտեխնիկական ուսումնարանների շինարարության պլանները։

Մոտակա երկու տարում լրիվին ավարտվելու է բոլոր ուսումնարանների անցումը միջնակարգ կրթությամբ որակյալ բանվորական կադրերի պատրաստմանը։ Դա արդի տեխնիկական առաջընթացի պահանջն է։ Բնական է, որ աշխատավոր մարդը, այսօրվա բանվորը պետք է համաքայլ ընթանա այդ

առաջընթացի հետ, այլապես նա չի կարող բավարարել արտադրության բարձր պահանջները։ Ուստի պրոֆեսիոնալ դպրոցի ինժեներամանկավարժական կադրերի խնդիրն է աշխատել պարտքի ու պատասխանատվության բարձր զգացումով, վճռականապես բարձրացնել ապագա երիտասարդ բանվորների հանրակրթական գիտելիքների մակարդակն ու մասնագիտական որակը։

ՀամԼԿԵՄ XIX համագումարում նշվեց, որ պրոֆտեխնիկական կրթության հեղինակությունը ներկայումս մեծապես պայմանավորված է ուսումնարաններում հանրակրթական ուսուցման որակի բարելավմամբ։ Ուստի ուսումնարանների ղեկավարները, դասատուները պետք է կատարելագործեն ուսուցման ձևերն ու մեթոդները, վճռականապես բարձրացնեն սովորողների հանրակրթական գիտելիքների մակարդակը, որակով կենսագործեն ուսումնական ծրագրերը։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ յուրաքանչյուր ուսումնարան լրիվ և ճշգրիտ կատարի իր բազային ձեռնարկության բանվորական կադրերի պատրաստման պատվերը։

Հանրապետության պրոֆտեխնիկական կրթության աշխատողների և սովորողների հմուտ ձեռքերով Երևանում ստեղծվել է աշխատանքային փառքի հիանալի թանգարան։ Այստեղ կենտրոնացված են սովորողների և աշխատողների ստեղծած 1.100-ից ավելի տեխնիկական և գեղարվեստական ստեղծագործություններ։ Թանգարանը դարձել է դպրոցականների պրոֆեսիոնալ կողմնորոշման ուսանելի օջախ։ Մի շարք ուսումնարաններում էլ, կոմերիտական կազմակերպությունների և մանկավարժական կոլեկտիվների նախաձեռնությամբ, ստեղծվել են աշխատանքային փառքի ցուցահանդես-թանգարաններ։ Այդտեղ ցուցադրված են տվյալ ուսումնարանի պատմությունը, նրա սաների աշխատանքային տարեգրությունը։ Այս ամենն օգնում է սովորողների աշխատանքային և գեղագիտական դաստիարակության կարևոր գործին, նպաստում ապագա երիտասարդ բանվորների հոգևոր և ստեղծագործական կարողությունների զարգացմանը։ Պրոֆտեխկրթության պետական կոմիտեն, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1982 թ.) պլենումի որոշումներից, պետք է մշակի և իրականացնի լրացուցիչ միջոցառումներ գյուղական պրոֆտեխնիկական ուսումնարանների աշխատանքը բարելավելու նպատակով։ Անհանդուրժելի է, երբ 14 գյուղական պրոֆտեխնիկական ուսումնարաններ մինչև այժմ չունեն ուսումնական տնտեսություններ։ Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը և շրջսովետների գործկոմները պետք է օգնեն ուսումնարաններին հատկացնելու անհրաժեշտ հողամասեր՝ ուսումնական նպատակով տնտեսություններ ստեղծելու համար։ Դա կօգնի բարձրացնելու մեխանիզատորական կադրերի մասնագիտական որակը և ձեռք բերելու ագրոտեխնիկական որոշակի գիտելիքներ։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների ինժեներամանկավարժական կադրերը, կուսակցական, կոմերիտական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն են հատկացնում ապագա բանվորների ոչ միայն մասնագիտական որակավորման բարձրացմանը, այլև նրանց կոմունիստական դաստիարակության հարցերին։ Աշխատանքային դաստիարակությունը պրոֆեսիոնալ դպրոցի առաջնակարգ խնդիրներից է։ Բավական է հիշատակել, որ սովորողները մասնագիտական ուսուցման պրոցեսում տարեկան թողարկում են շուրջ 1,9 միլիոն ռուբլու համախառն արտադրանք, այդ թվում մոտ 700 շաղափող և սրահաստոցներ, որոնք լայնորեն օգտագործվում են Միության բազմաթիվ ձեռնարկություններում։ Սովորողները արտադրական պրակտիկայի ընթացքում ստեղծում են նյութական բարիքներ, տալով ավելի քան 2 միլիոն ռուբլու եկամուտ։ Ուսումնարանների շրջապատի ծառապատումը կատարվում է սովորողների և աշխատողների ջանքերով։ Նրանք ակտիվորեն են մասնակցում նաև մեր քաղաքների, շրջկենտրոնների ու գյուղերի բարեկարգմանը։ Այս ամենն աշխատանքային դաստիարակության հիանալի օրինակներ են։

Պրոֆտեխնիկական ուսումնարաններում պատշաճ ուշադրություն է հատկացվում սովորողների տեխնիկական ստեղծագործության զարգացման հարցերին։ 1981 թ. ուսումնարանների սովորող և աշխատող 384 նորարարներ ու ռացիոնալիզատորներ ներկայացրել են 352 ռացիոնալիզատորական առաջարկություններ, որից 332-ը ներդրվել է։ Պրոֆտեխնիկական ուսումնարաններում գործում են տեխնիկական ստեղծագործության 350 խմբակներ, որտեղ ընդգրկված են շուրջ 7.000 պատանիներ ու աղջիկներ։ Այժմ ուսումնարանների ռացիոնալիզատորներն ու գյուտարարները հայտարարել են սոցիալիստական մրցություն՝ տեխնիկական նոր առաջարկություններով դիմավորելու ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը։ Տեխնիկական խմբակների ուժերով պատրաստվել են մոտ 2.000 անուն ուսումնադիտողական պարագաներ, գործիքներ, հարմարանքներ։

Մեծ հետաքրքրություն են առաջացնում սովորողների պրոֆեսիոնալ վարպետության մրցույթները։ Միայն 1982 թ. կազմակերպվել է 148 մրցույթ, որին մասնակցել են 140 մասնագիտության 5.600 սովորողներ։ Այդ ամենը նպաստում է ապագա բանվորների տեխնիկական և մասնագիտական գիտելիքների ընդլայնմանը։

Հանրապետության պրոֆտեխնիկական ուսումնական հաստատություններում ստեղծված են 35 մշտական գործող ցուցահանդեսներ։ Տարվա վերջին Երևանում կբացվի պրոֆեսիոնալ դպրոցի սովորողների և ինժեներամանկավարժական աշխատողների տեխնիկական լավագույն ստեղծագործությունների հանրապետական ցուցահանդեսը։

Պրոֆտեխնիկական ուսումնարաններում լայնորեն է ծավալվում գեղարվեստական ինքնագործունեությունը։ Ինքնագործ խմբակներում ընդգրկված են ավելի քան 25 հազար սովորողներ ու աշխատողներ։ Պրոֆտեխնիկական կրթության պետական կոմիտեի մշակույթի տան Երվանդ Սահառունու անվան երգի-պարի ժողովրդական անսամբլը 1980 թ. մոտ մեկ ամիս հաջող ելույթներ ունեցավ Մոսկվայում օլիմպիական խաղերի մասնակիցների համար և արժանացավ օլիմպիական կոմիտեի պատվոգրին։ Բոլոր ուսումնարաններում դասավանդվում է գեղագիտություն, որը օգնում է ապագա բանվորների գեղագիտական ճաշակի զարգացմանը, նրանց ծանոթացնում է արտադրության գեղագիտության հարցերին։

Երիտասարդ բանվորը պետք է լինի նաև ֆիզիկապես կոփված և առողջ։ Ուստի պրոֆտեխնիկական ուսումնական հաստատությունների համակարգում արժանի տեղ ունի «Աշխատանքային ռեզերվներ» կամավոր մարզական ընկերությունը, որի շարքերում ընդգրկված են շուրջ 45 հազար սովորողներ ու աշխատողներ։ Պրոֆեսիոնալ դպրոցի աշխատողները հպարտ են, որ նրանց սաներից են եղել՝ բռնցքամարտիկներ՝ օլիմպիական չեմպիոն Վլադիմիր Ենգիբարյանը, օլիմպիական խաղերի բրոնզե մեդալակիր Դավիթ Թորոսյանը, աշխարհի կրկնակի չեմպիոն՝ մարմնամարզիկ Արթուր Հակոբյանը, Սովետական Միության 1981 թ. բռնցքամարտի չեմպիոն Իսրայել Հակոբքյոխվյանը և շատ ուրիշներ։ Բավական է նշել, որ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների սովորողների համամիութենական սպարտակիադաներում, վերջին երեք տարիներին անընդմեջ, Հայաստանի պրոֆտեխուսումնարանների մարզական պատվիրակությունը գրավել է երրորդ պատվավոր տեղը։

Անցած 60 տարիներին կուսակցության ու կառավարության ջերմ հոգատարության շնորհիվ Միության բոլոր հանրապետություններում, այդ թվում նաև Սովետական Հայաստանում, ստեղծվել է պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության մի կուռ համակարգ, որը հաջողությամբ լուծում է որակյալ բանվորական կադրերի պատրաստման բարդ ու պատվավոր խնդիրները։

Սոցիալական ու գիտատեխնիկական պրոգրեսը պահանջում է անընդմեջ կատարելագործել պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության գործը, ժողովրդական տնտեսությանը տալ մասնագիտական և հանրակրթական խոր գիտելիքներով զինված համալրում։

---

# ԲԱՇԽՄԱՆ ԷԱԿԱՆ ԴԵՐԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԾՐԱԳՐԱՅԻՆ ՆՊԱՏԱԿԸ մարդն է, նրա բարեկեցությունը և համակողմանի զարգացումը։ Այդ վեհ խնդիրը կոնկրետ ձևակերպվեց ՍՄԿԿ XXVI համագումարի ընդունած փաստաթղթերում, կուսակցության Կենտրոնական կոմիտեի հետհամագումարյան որոշումներում, հատկապես ընթացիկ տարվա ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի հաստատած պարենային ծրագրում։ Կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն շարունակում է իր տնտեսական ստրատեգիայի իրականացումը։ Դա ո՛չ միայն առաջնահերթ տնտեսական, այլև հրատապ սոցիալ-քաղաքական խնդիր է։ Սովետական մարդկանց կենսական պահանջմունքների բավարարումը եղել և մնում է կոմունիստական կուսակցության նպատակը։*

*Կուսակցության XXVI համագումարի որոշումներում ստեղծագործաբար զարգացվեց նախորդ համագումարների առաջադրած գլխավոր խնդիրը՝ ժողովրդական տնտեսությունը առավելապես ծառայեցնել սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման բազմապիսի խնդիրների լուծմանը։ Անցած հնգամյակում մեր հասարակության տնտեսական ու սոցիալական զարգացման սոցիալ-քաղաքական հիմնական հանրագումարը էկոնոմիկայի վերելքի հաստատուն բազայի վրա շարունակվող հասարակական հարաբերությունների ողջ համակարգի, սոցիալիստական ապրելակերպի հետագա կատարելագործումն է։ Ընթացիկ հնգամյակում, ամբողջությամբ վերցրած ութսունական թվականներին, ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման լայն ծրագիրն ընդգրկում է սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերի բարելավումը. սպառում, բնակարան, կուլտուրա, հանգիստ, աշխատանքի ու կենցաղի պայմաններ։*

*Արդի փուլում կուսակցության փաստաթղթերում դրսևորված է զարգացած սոցիալիզմի պայմաններում տնտեսական ու սոցիալական քաղաքականության հարաճուն փոխադարձ կապը։ Մի կողմից, բուն էկոնոմիկայի բնագավառում դրվում է սոցիալական խնդիրների լուծման հիմքը։ Կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր նպատակը էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների առավել լրիվ օգտագործումն է, որը հետևողականորեն իրականացվում է հանուն ժողովրդի բարեկեցության բարձրացման։ Մյուս կողմից, տնտեսական զարգացման առավելապես ինտենսիվ ուղին պայմանավորվում է սոցիալական գործոնների դերի շեշտակի ուժեղացմամբ, որը նըպաստում է հասարակական արտադրության արդյունավետության ու որակի բարձրացմանը։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը, անդրադառնալով սոցիալական քաղաքականության հարցերին, հատկապես առանձնացրեց բաշխման ոլորտը, նպատակադրելով բարձրացնել վերջինիս դերը՝ ըստ աշխատանքի վճարման սկզբունքը կատարելագործելու և սպառման հանրային ֆոնդերն արդյունավետ օգտագործելու միջոցով։*

*Սոցիալիստական պետության սոցիալ-տնտեսական գործունեության միասնական համակարգում տնտեսական և սոցիալական քաղաքականությունը հա-*



*սարակական պրոցեսների կառավարման հարաբերականորեն ինքնուրույն բնագավառ է։ Տնտեսական քաղաքականությունը սահմանում է հասարակության արտադրաուժերի զարգացման ստրատեգիան, հետամտելով սոցիալական բարձրագույն նպատակը՝ առավել լիովին բավարարել աշխատավորների նյութական ու հոգևոր պահանջմունքները։ Սոցիալական քաղաքականությունը կոնկրետացնում է հասարակական արտադրության բարձրագույն նպատակը՝ իբրև սոցիալական առաջնային խնդիրների համակարգ, ապահովում հասարակության տնտեսական հնարավորությունների աճին զուգընթաց բաշխման սոցիալական համամասնությունների բարելավում այն հաշվով, որպեսզի աստիճանաբար հաղթահարվեն քաղաքի ու գյուղի միջև առկա տարբերությունները, ինչպես նաև բարելավվեն բնակչության կենսապայմանները՝ նպաստելով հասարակության սոցիալական միատարրության ներդաշնակմանը։*

*Սովետական հասարակության տնտեսական ու սոցիալական զարգացման նպատակների և ուղիների սահմանման համար կարևոր նշանակություն ունի սոցիալական արդարության պրոբլեմատիկայի կոմպլեքսային, սիստեմային վերլուծությունը։ Սոցիալական արդարություն հասկացությունը իրական բովանդակություն է ստանում սոցիալիզմի պայմաններում։ Դեռևս Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, անդրադառնալով բարոյականության ու արդարության նորմերին, շեշտում էին վերջինիս սոցիալ-կարգավորիչ ֆունկցիան։ Ի տարբերություն էթիկայի այլ կատեգորիաների, արդարությունն առավել սերտորեն է առնչվում բաշխային, տնտեսական համակարգին։ Կենսական բարիքների բաշխման առումով հարաբերություններն անձնավորությունների, սոցիալական խմբերի ու դասակարգերի միջև ծառայում են մարդկանց պահանջմունքների բավարարմանը։ Արդարություն հասկացության բովանդակության մեջ արտացոլվում է մարդու իրավունքների ու պարտականությունների համաչափությունը, որը բնորոշվում է սոցիալ-տնտեսական հարաբերություններով, տվյալ հասարակության քաղաքական ու իրավական կառուցվածքով, տարբեր սոցիալական խմբերի կենսավիճակով։*

*Արդարությունը, հանդիսանալով մարդկային հարաբերությունների բազմանշանակ արտահայտություն, միևնույն ժամանակ արտահայտում է հասարակական-բարոյական իդեալի իրականացման աստիճանը հասարակության ամենօրյա պրակտիկ կյանքում, իրավական նորմերում, ամրակայելով իշխող սոցիալ-տնտեսական հարաբերությունները։ Փիլիսոփայական-էթիկական գրականության մեջ վաղուց է նկատված, որ արդարությունն ու անարդարությունը, իբրև արժութային հասկացություններ, բովանդակում են սոցիալական ու բարոյական իդեալի մեկնակետից արված տվյալ հասարակական հարաբերությունների գնահատականը։ Արդարությունը երևան է գալիս իբրև մարդկանց անհատական ու մասսայական վարքագծի առավել ակտիվ ազդակ։ Լենինը սոցիալական արդարությունը քննել է իբրև հասարակական իդեալի կարևոր տարր, որը դարերով գոյատևել է ժողովրդական զանգվածների գիտակցության մեջ, մղել նրանց պայքարի ամեն կարգի կեղեքման դեմ։*

*Վերացնելով սոցիալական անհավասարության գլխավոր հակամարտական տիպը, պայմանավորված շահագործմամբ ու դասակարգային կեղեքմամբ, սոցիալիզմը պայմաններ է ստեղծում միատարր հասարակության հաստատման համար, իրականացնում մասսաների սոցիալ-բարոյական ձգտումները։*

*Քննադատելով «հավերժական արդարության» գաղափարը, գիտական կոմունիզմի հիմնադիրները հատուկ շեշտել են, որ արդարությունը, ինչպես և մյուս սոցիալական հասկացությունները, պետք է քննել ժամանակի ու տարածության մեջ, կոնկրետ սոցիալ-պատմական պարագաների ոլորտում։ Արդարություն հասկացությունը նրանք լայնորեն արծարծել են իրենց աշխատություններում այն հասարակության բաշխման եղանակների տարբերությունները վերլուծելիս, որը «նոր է բողբոջում բուն կապիտալիստական հասարակությունից և այդ պատճառով բոլոր՝ տնտեսական, բարոյական ու մտավոր առումներով դեռևս պահպանում է հին աշխարհի վերապրուկները, որի ընդերքից է ինքը դուրս եկել»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 18)։

Սոցիալիզմի կառուցման պայմաններում հասարակական բարիքների բաշխման չափերում առկա անարդարացի տարբերությունները Լենինը բացատրում էր հասարակական արտադրության զարգացման մեջ անձնավորությունների անհավասար ներդրումով, որը բխում է մարդկանց առողջական վիճակից, ունակությունների զարգացման աստիճանից, պայմանավորվում ընտանեկան վիճակով, աշխատողի խնամքի տակ գտնվողների թվով։ Այստեղ անխուսափելիորեն գործում է «բուրժուական իրավունքը»։ Իրականում բարեկեցության ոլորտում սոցիալիստական հասարակության զարգացման ընթացքում են հաղթահարվում բաշխման անարդարացի տարբերությունները։ Պետություն և հեղափոխություն աշխատության մեջ Վ. Ի. Լենինը կոնկրետ ձևով չի դնում բաշխման պրոբլեմը կոմունիստական հասարակության տարբեր փուլերի համար, քանի որ դրա լուծման նյութը, ըստ նրա, կարող է տալ միայն նոր հասարակության կառուցման իրական փորձը։ Անցումը ձևական հավասարությունից իրական հավասարության, նշել է Լենինը, մեզ անհայտ է և այն դեռևս գիտենալ չենք կարող։

Այդ հարցերը առավել հրատապ դարձան սոցիալիստական շինարարության առաջին տարիներին։ Լենինը հետևողականորեն շեշտել է արդարացի բաշխման իրավունքը, հավասարաչափ բաշխելու իրավունքը։ Այդ մեկնակետից էր նա գնահատում սովետական իշխանության՝ բարձր աշխատավարձերն ընդհուպ միջին բանվորի աշխատավարձի չափին իջեցնելու սոցիալական քաղաքականությունը։ Այդ միտումը նա հիմնավորում էր ո՛չ միայն բուն սոցիալական, այլև սոցիալ-բարոյական նկատառումներով, անհրաժեշտությամբ, «կարիերիզմի դեմ պայքարել գործով և ոչ թե խոսքերով» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 220)։

Լենինը գտնում էր, որ արդարացի բաշխումը հնարավոր է իրականացնել միայն որոշ սահմանափակումների գործադրումով։ Սոցիալիզմի օրոք բաշխումը միաժամանակ արտադրությունը զարգացնելու միջոց է։ Սոցիալիստական բաշխման հիմնական խնդիրների լուծման անհրաժեշտությունը առնչվում է սոցիալական հավասարության և անհավասար աշխատանքի համար անհավասար հատուցման սկզբունքների հետ։ Այդ առիթով Լենինը նշել է. «Դժվար հարց է։ Որովհետև պետք է այսպես թե այնպես զուգորդել հավասարությունն ու հարվածայնությունը, իսկ այդ հասկացություններն իրար բացառում են։ Բայց մենք այնուամենայնիվ մի քիչ մարքսիզմ սովորել ենք։ Սովորել ենք թե ինչպե՛ս, և ե՛րբ կարելի է և պետք միացնել հակադրությունները, իսկ գլխավորն այն է, որ մեր հեղափոխության ժամանակ երեք ու կես տարվա ընթացքում մենք շատ անգամ ենք գործնականորեն միացրել հակադրությունները... հարվածայնությունից հավասարության անցնելը հեշտ չէ... Չէ՛ որ այդ հակադիր հասկացությունները կարելի է այնպես միացնել, որ ստացվի կակոֆոնիա, բայց կարելի է նաև այնպես միացնել, որ ստացվի սիմֆոնիա» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 32, էջ 13)։

Մեկնաբանելով համահարթումը, հավասարեցումը սոցիալական հավասարության իմաստով, Լենինն այն սեպում էր իբրև սոցիալիստական բաշխման միտում։ Միևնույն ժամանակ նա հավասարեցման մեջ տեսնում էր տարբեր սոցիալ-մասնագիտական ու սոցիալ-դեմոգրաֆիական խմբերի եկամուտների ու պահանջմունքների հավասարեցում, որը հաճախ նմանեցվում էր մանրբուրժուական համահարթման հետ և համարվում իբրև անընդունելի ու բացասական երևույթ սոցիալիստական բաշխման գործում։

Զարգացած սոցիալիզմի էտապում բաշխման հարաբերություններում կատարվում են էական փոփոխություններ։ ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ 70-ական թվականներին բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների այն ընտանիքների թիվը, որոնցում մեկ մարդուն ամսական ընկնում է ավելի քան հարյուր ռուբլի, աճել է գրեթե եռակի։ Եվ, ընդհակառակն, այն ընտանիքների թիվը, որոնցում մեկ շնչին ընկնող եկամուտը ամսական 50 ռուբլուց պակաս է, կրճատվել է գրեթե նույն չափով։ Այսինքն, տեղի է ունենում աշխատավորների բոլոր խմբերի կենսամակարդակների ոչ միայն աճ, այլև մերձեցում։ «Այս միտումը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— կուժեղանա, և այնքան ավելի արագ, որքան ավելի արդյունավետորեն կաշխատեն բոլորը։



Սոցիալիզմի օրոք բաշխման գլխավոր չափանիշը կարող է լինել միայն աշխատանքը՝ նրա քանակն ու որակը։ Ցավոք, գործնականում միշտ չէ, որ այդպես է լինում։ Ամեն տեսակ հավասարությունը, ըստ էության, սոսկ աշխատանքի ներկայանալու համար, այլ ոչ թե նրա ռեալ արդյունքների դիմաց աշխատավարձ դուրս գրելը, չվաստակած պարգևավճարներ տալը՝ այդ ամենը անչափ վնասակար է անդրադառնում թե՛ արտադրական ցուցանիշների և թե մարդկանց հոգեբանության վրա» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 95—96)։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման ծրագիրը իրականացնելիս կուսակցությունը հատուկ ուշադրություն է դարձնում բնակչության պակաս ապահովված կատեգորիաների կենսամակարդակի բարձրացմանը։ Սոցիալական քաղաքականության այդ ուղղությունը դրսևորվում է այնպիսի միջոցառումներում, ինչպիսիք են նվազագույն աշխատավարձի բարձրացումը մինչև 80 ռուբլու, բանվորների ու ծառայողների բոլոր տեսակի նվազագույն չափի դրույքների ու թոշակների բարձրացումը։ Սոցիալիստական սեփականության երկու ձևերի էական սոցիալ-տնտեսական ու կուլտուրական տարբերությունների հաղթահարման գիծը համապատասխանում է արդի գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության աճին, հասարակական արտադրության մեջ կոլտնտեսականների որակավորման ու զբաղվածության բարձրացմանը, նրանց վճարման մակարդակը հասցնելով պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների աշխատողների վճարման մակարդակին։ Ընթացիկ հնգամյակում նախատեսված է նաև կոլտնտեսականների ու պետական ձեռնարկությունների աշխատողների սոցիալական ապահովման պայմանների հետագա հավասարեցում, կոլտնտեսականների արձակուրդների նվազագույն տևողությունը սահմանելով բանվորների ու ծառայողների արձակուրդի չափով։

Սոցիալական արդարությունն իր արտահայտությունն է գտնում նաև աշխատողների աշխատանքային ներդրման սոցիալապես չարդարացվող «հավասար» գնահատումը հաղթահարելու մեջ, որոնք կատարում են միատեսակ աշխատանքային ֆունկցիա, սակայն որակապես տարբեր մակարդակով։ Կուսակցության XXVI համագումարում հստակ ասվեց, որ «նյութական ու բարոյական խթանների մեր սիստեմը պետք է միշտ և ամենուրեք ապահովի յուրաքանչյուրի աշխատանքային ներդրման արդարացի և օբյեկտիվ գնահատականը։ Պետք է ամեն կերպ խրախուսել բարեխիղճ աշխատողներին, միանգամայն անպետք աշխատանքի դեպքում լավ ապրելու ոչ մի սողանցք չթողել ծույլերի և խոտանարարների համար։ Ով ուզում է ավելի լավ ապրել, նա պետք է ավելի շատ ու ավելի լավ աշխատի» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 96)։

Կուսակցության սոցիալական քաղաքականությունը հիմնվում է լենինյան դրույթների վրա. սոցիալիզմի օրոք «արտադրության կազմակերպման լավագույն օրինակը զուգակցվելու է աշխատանքի անխուսափելի թեթևացման և սպառման գումարի մեծացման հետ նրանց համար, ովքեր կիրառել են այդ լավագույն կազմակերպումը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 185—186)։ Լենինը շեշտել է, որ պետությունը ո՛չ միայն պետք է համոզի, այլև լավ աշխատակիցներին վարձատրի կյանքի լավագույն պայմաններով։

Հիրավի, սոցիալիզմն իրենից ներկայացնում է այնպիսի պատմական փուլ, որի գլխավոր խնդիրը արմատական սոցիալական պրոբլեմների լուծումն է։ Սոցիալիզմի օրոք ամեն մի երևույթ պետք է դրսևորի իր նպատակահարմարությունը, համապատասխանումը և որակը ո՛չ միայն ըստ առանձին ցուցանիշների, այլև անպայման ըստ համասիստեմային, այսինքն սոցիալական ցուցանիշների։ Նման պայմաններում հաշվեկշիռների, ազգային եկամտի բաշխման, աճի անհրաժեշտ կետերի հարցը ձեռք է բերում ընդհանուր սիստեմային նշանակություն և իր գնահատման համար պահանջում բարձրագույն հասարակական չափանիշներ (տե՛ս «Вопросы философии», 1981, № 5, стр. 8)։

Ժողովրդատնտեսական պրոբլեմներ լուծելիս, տնտեսական ու սոցիալա-
կան արդյունավետության բարձրացման խնդիրները հաճախ դրսևորվում են
դիալեկտիկական հակասությունների ձևով։ Սոցիալական ու տնտեսական ար-
դյունավետության հակասական միասնությունը լիովին դրսևորվում է աշ-
խատանքի խթանման պրոբլեմներ լուծելիս, որի կատարելագործումը տնտե-
սական մեխանիզմի բարելավման անհրաժեշտ պայման է։

Սոցիալիստական արտադրության դիալեկտիկան դրսևորվում է նրանում,
որ երկրի յուրաքանչյուր քաղաքացու սահմանադրական սոցիալ-տնտեսական
իրավունքների իրականացման սոցիալական երաշխիքների ընդլայնումն ան-
խզելիորեն առնչվում է յուրաքանչյուր աշխատավորին իր սեփական գործու-
նեության արդյունքներով շահագրգռող խթանների արդյունավետ համակարգի
ստեղծման հետ։ Բարելավելով երեխաների ու անաշխատունակների խնամքը
հասարակության հաշվին, դրանով իսկ բավարարելով հասարակության ան-
դամների համար առավել հավասար հնարավորություններ և ծայրահեղ իրա-
վիճակներում մարդու սոցիալական պաշտպանությունը, կապված աշխատու-
նակությունն ամբողջովին կամ մասամբ կորցնելու հետ, սոցիալիստական հա-
սարակությունը միաժամանակ իրականացնում է սահմանադրությունում ամ-
րակայված սկզբունքը, որի համաձայն հանրօգուտ աշխատանքը և դրա ար-
դյունքները որոշում են մարդու իրավիճակը հասարակության մեջ։ Ըստ այդ
սկզբունքի սահմանվում է աշխատանքի դրական խթանման համակարգ, երաշ-
խավորելով հասարակական արտադրության մեջ ջանք ու կորով ներդնող մար-
դու իրավունքը՝ ավելի շատ ու որակյալ բարիքներ վայելելու, քան այն ան-
ձինք, ովքեր պակաս ավանդ ունեն հասարակական հարստության ավելացման
գործում։

Ժողովրդի նյութական բարեկեցության վերելքի խնդիրները և տարբեր սո-
ցիալական խմբերի կենսավիճակի հավասարեցումը լուծվում են առկա տըն-
տեսական հնարավորություններին համապատասխան։ Բաշխման հարաբերու-
թյունների և դրանց կատարելագործման մարքսիստական ըմբռնումը հակա-
դրվում է մանր բուրժուական մոտեցմանը, որը բաշխումն անջատում է ար-
տադրությունից, թերագնահատում օբյեկտիվ գործոնների դերը։ Կենսամա-
կարդակի արհեստական բարձրացման ձգտումը, առանց հաշվի առնելու արդի
արտադրաուժերի ու արտադրահարաբերությունների մակարդակը, բնորոշ է
քաղքենու գիտակցությանը, որը, լենինյան խոսքերով ասած, հակված է «պա-
հանջել անհնարինը» և ժխտել «հասարակության ու պետության կողմից խըս-
տագույն վերահսկողությունը աշխատանքի չափի ու սպառման չափի վրա»։
Հատկապես կարևոր է այդ սկզբունքային պահանջը հաշվի առնել աշխատանքի
խթանման ու բաշխման հարցերը կատարելագործելիս։ Ազնիվ, բարեխիղճ,
ստեղծագործական աշխատանքի հեղինակության հաստատումը հուսալի երաշ-
խիք է սպառողական հոգեբանության տրամադրությունների, քաղքենիության
ռեցիդիվների, մանր բուրժուական բարքերի դեմ մղվող պայքարում։

Հասարակությունը կարող է բաշխել այն, ինչ ունի։ Ուստի որքան շատ են
աշխատանքի արդյունքները, այնքան հարուստ է սոցիալիստական պետու-
թյունը, ավելի լիովին է բավարարվում անձնական ու հասարակական պա-
հանջմունքները, ավելի բարձր է սովետական մարդկանց կենսամակարդակը։

Հասարակության սոցիալական միատարրության ուժեղացման պրոցեսը
սերտորեն առնչվում է սոցիալիստական սեփականության երկու ձևերի միջև
առկա սոցիալական, ինչպես նաև քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական
աշխատանքի միջև տարբերությունների վերացման հետ։

Կուսակցությունը, գիտականորեն իրականացնելով ժողովրդի բարեկեցու-
թյան բարձրացման ծավալուն ծրագիրը, հաշվի է առնում հասարակական
զարգացման արտաքին ու ներքին գործոնների միասնությունը, սովետական
պետության ինտերնացիոնալ պարտավորությունները՝ կապված սոցիալիստա-
կան ընկերակցության հզորությունն ամրապնդելու, զարգացող երկրներին, սո-
ցիալիստական կողմնորոշման պետություններին օգնելու, իմպերիալիզմի ու
հեգեմոնիզմի ուժերին հակահարված տալու անհրաժեշտության հետ։

Հասարակության բոլոր սոցիալական խմբերի պահանջմունքների աճը



օբյեկտիվորեն բարձրացնում է բաշխման քաղաքականության խնդիրները։ Ի
հայտ են գալիս բաշխման մեխանիզմների պահպանման հետ առնչվող տըն-
տեսական ծախսեր, որոնք չեն համապատասխանում նոր սոցիալական խըն-
դիրներին ու պահանջներին։ Անցումը կոմունիզմին սոսկ բարեկեցության աճ
չէ, այլ այդ աճի այնպիսի ուղղություն, որն ապահովում է բնակչության բոլոր
կատեգորիաների ապրելակերպի հետևողական մերձեցում, սպառման մարդկայ-
նացում, այսինքն դրա կառուցվածքի այնպիսի ձևավորում, որի ժամանակ
նյութական պահանջմունքները չեն չափազանցվի ի վնաս մարդկային կենսա-
գործունեության հոգևոր, սոցիալական ու բարոյական հիմքերի զարգացման։

Կյանքը թելադրում է, որ տվյալ պրոբլեմի լուծման կարևոր միջոց է որա-
կավորում չպահանջող աշխատանքներում ընդգրկել նրանց, ովքեր հիմնական
գործից հետո, ազատ ժամերին լրացուցիչ եկամուտ ստանալու նպատակով
պատրաստ են այդ աշխատանքը կատարել։ Հեռանկարային է այստեղ օգտա-
գործել սովորող երիտասարդության ուժերը։ Այս եղանակով հնարավոր կլինի
անհետաքրքիր, նվազ բովանդակալից, սակայն դեռևս հասարակայնորեն ան-
հրաժեշտ մասնագիտություններում սոցիալապես չամրացնել մարդկանց որո-
շակի խմբերին և տնտեսական պայմաններ ստեղծել անհրապույր աշխա-
տանքները խելամտորեն ու սոցիալապես արդարացի բաշխելու համար։

Տնտեսական նպատակահարմարության ու սոցիալական արդարության
սերտ զուգակցումը դրսևորվում է նաև սոցիալական արտոնությունների ոլոր-
տում, որոնք որոշակի սոցիալական խմբերին հատուցելու ձև է բնակչության
հիմնական մասսայի կենսապայմանների համեմատ աշխատանքի կամ ապ-
րուստի վատ պայմանների համար։ Ընթացիկ հնգամյակում այդ ուղղությամբ
նախատեսվում են նոր միջոցառումներ՝ աշխատավարձի ռեգիոնալ կարգա-
վորման կատարելագործում (հեռավոր շրջաններում անընդհատ աշխատան-
քային ստաժի համար շրջանային գործակիցներ ու հավելումներ), առանձին
ճյուղերում գիշերային աշխատանքի համար լրացուցիչ վճարում, բնակչության
պահանջմունքների առավել լրիվ բավարարում ծանր բնական պայմաններ
ունեցող նոր յուրացվող գոտիներում։

Սոցիալական զանազան խմբերի եկամուտների ու սպառման միջև տար-
բերության ամեն մի աճ չէ, որ նշանակում է սոցիալական անհավասարության
մեծացում։ Դրամական եկամուտներն անմիջական կենսապայմանների լոկ
մի մասն են։

Կուսակցության սոցիալական քաղաքականության գլխավոր արդյունքնե-
րից է բնակչության դրամական եկամուտների աճը, որը զարգացած սոցիա-
լիզմի ողջ ժամանակամիջոցում ժողովրդի բարեկեցության բարձրացման հիմ-
նական ուղին է։ Վերջին տասնամյակներում մի քանի անգամ ավելացել են
դրամական եկամուտները և համապատասխանաբար աշխատավորների գնո-
ղունակությունը, բարձրացել է կենսական բարիքների որակը։ Այդ ընթացքում
սպառման ոլորտում ստեղծվում է որակապես նոր իրավիճակ, որն առնչվում
է աշխատավոր զանգվածների պահանջմունքներում կատարվող փոփոխու-
թյունների, նրանց կենսական շահախնդրությունների ընդլայնման հետ։ Անձ-
նական պահանջմունքների թվում առաջնային նյութական կարիքների բավա-
րարման հետ մեկտեղ մեծ նշանակություն են ստանում հարմարավետ բնա-
կարանը, որակյալ բժշկական օգնությունը, երեխաների ունակությունների
զարգացումը, ազատ ժամանակը խելամիտ ու բովանդակալից անցկացնելը և
այլն։

Այնուհանդերձ դեռևս որոշակի պրոբլեմ են մնում բնակչության դրամա-
կան եկամուտների իրացումը հասարակական առևտրի ոլորտում, հարաճուն
գնողունակ պահանջարկի ու շրջանառության մեջ եղած ապրանքների քանակի
ու որակի միջև առաջացած խզումը։ Ապրանքային դեֆիցիտի անխուսափելի
սոցիալական հետևանքն են սպեկուլյացիան, կաշառակերությունը, ծառայա-
կան չարաշահումները, մասնավոր ձեռներեցությունը և այլն։

Եկամուտների տարերային վերաբաշխման ոլորտի գոյությունը խաթարում
է աշխատավորության կենսամակարդակի բարձրացման սոցիալական ու տըն-
տեսական արդյունավետությունը։ Չբավարարված գնողունակ պահանջարկի

իրավիճակից օգտվում են ճարպիկ գործարարները, հող է ստեղծվում անաշխատ եկամուտների համար։ Նման հեշտ կյանքի հնարավորությունը օբյեկտիվորեն նվազեցնում է հասարակական արտադրությանն ակտիվորեն ու բարեխիղճ կերպով մասնակցելու խթանները, քայքայիչ ներգործություն ունենալով շրջապատի, հատկապես երիտասարդության վրա։ Հսկման ենթակա շրջանառության ոլորտից դուրս դրամական միջոցների հոսքը մեծ վնաս է հասցնում սոցիալիստական էկոնոմիկային, սովետական հասարակության սոցիալական զարգացման պահանջներին, սահմանափակելով պետության հնարավորությունները արտադրության հետագա զարգացման ու սոցիալական ծրագրերի ընդլայնման գործում։ Հաշվարկները վկայում են, որ բնակչության եկամուտների կազմում աշխատավարձից ու սպառման հանրային ֆոնդերից արվող վճարումներից բացի, կան այսպես կոչված թաքնված եկամուտներ (բոլոր դրամական հասույթները, որոնք պաշտոնական հաշվառումից դուրս են)։ Հավանաբար այդ թաքցված եկամուտների աղբյուր են չհաշվարկված հասույթներն անձնական օժանդակ տնտեսությունից, բնակարանի վարձով տալը, ինչպես նաև մասնավոր կարգով անձնական ծառայությունները, որոնք պետական ֆինանսական մարմինները չեն վերահսկում և հաշվի չեն առնում։

Անաշխատ եկամուտների և վաստակով ձեռք չբերած բարիքներ ստանալու հնարավորության դեմ պայքարի սոցիալական ասպեկտը հատկապես շեշտվեց կուսակցության XXVI համագումարում։ «Սովետական մարդիկ մեծամասնությամբ աշխատում են ազնվորեն, հոգու նվիրումով,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։— Նրանք իրավամբ և խելամտորեն են օգտվում բազմապիսի բարիքներից, որ նրանց տալիս է հասարակությունը, պահպանում ու բազմապատկում են մեր ժողովրդական սեփականությունը։ Բայց մեզանում կան նաև այնպիսի մարդիկ, որոնք ձգտում են որքան կարելի է քիչ տալ պետությանը, բայց ավելի շատ պոկել նրանից։ Հենց նման հոգեբանության հողի վրա էլ դրսևորվում են եսամոլությունն ու քաղքենիությունը, փող դիզելու տենչը, ժողովրդի հոգսերի ու գործերի նկատմամբ անտարբերությունը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 103—104)։ Համագումարում հատուկ նշվեց, որ անհրաժեշտ են բոլոր կազմակերպական, ֆինանսական, իրավաբանական միջոցներով ամուր փակել բոլոր ճեղքերը պորտաբուծության, կաշառակերության, անաշխատ եկամուտների, սոցիալիստական սեփականության նկատմամբ ամեն մի ոտնձգության դեմ։

Նոր մարդու կերպավորմանը խանգարող երևույթների դեմ պայքարում անհրաժեշտ է ստեղծել այնպիսի պայմաններ, որպեսզի վերացվեն դրանց գոյության սոցիալ-տնտեսական արմատները։

Հարկ է նկատել, որ գափելու, անաշխատ եկամուտներ կորզելու միտումները հաճախ դրսևորվում են վճարովի սպասարկումների նեղ շրջանակներում, ինչպես և կենսական բարիքների անվճար ու արտոնյալ բաշխման մարզում։ Անաշխատ, զարտուղի եղանակով եկամուտ ստանալու պրակտիկան բացասաբար է ազդում սոցիալական արդարության, սոցիալիստական բաշխման սկզբունքների վրա։ Նման երևույթները կարելի է խափանել առաջին հերթին ոչ թե իրավական նորմերով, այլ սոցիալ-տնտեսական միջոցառումներով, որոնք նպաստում են բնակչության եկամուտների ու սպառման կազմի բարելավմանը։ Տարերային վերաբաշխման պրոցեսները վիժեցնելու գործուն միջոց է տնտեսական այնպիսի մեխանիզմների հաստատումը, որը յուրաքանչյուր աշխատավորի հնարավորություն կընձեռի հասարակական արտադրությունում ազնվորեն վաստակած միջոցներով ձեռք բերելու բարձրորակ բարիքներ։

Կուսակցության սոցիալական ծրագրով նախատեսվում է բնակչության դրամական եկամուտների կարգավորում, մարդկանց սոցիալապես երաշխավորված կենսամինիմումի բարձրացում։ Հիմնական օրենքում ցույց է տրված, որ սովետական քաղաքացիների աշխատանքի իրավունքը ենթադրում է նաև վարձատրման նվազագույն չափ։ Վերջին քսանհինգ տարում այդ աշխատավարձը բարձրացել է չորս անգամ։ Օրենսդրորեն սահմանված են սպառման հասարակական ֆոնդերից կենսաթոշակներ, ուսումնաթոշակներ, նպաստներ, վճարովի արձակուրդներ և այլն։ Սոցիալիստական հասարակության սոցիալա-



կան երաշխիքների համակարգը սովետական մարդկանց օժտում է մի շարք առաջնահերթ պահանջմունքներ բավարարելու հավասար իրավունքներով, որն անհրաժեշտ է բանվորական ուժի նորմալ կենսագործունեության, ինչպես և անհատի ազատ զարգացման համար։

Կյանքը վկայում է, որ տակավին պահպանվում են տարբերությունները բնակարանով, կուլտուր-կենցաղային սպասարկումով, առողջապահական, նախադպրոցական հիմնարկություններով ապահովվածության հարցում, ինչպես նաև քաղաքի ու գյուղի, խոշոր ու փոքր քաղաքների, տնտեսական շրջանների միջև եղած տարբերությունները, որոնք պայմանավորվում են դեռևս գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական բարդություններով, արտադրաուժերի տեղաբաշխման առանձնահատկություններով, աշխարհագրական միջավայրով։

Հաճախ այն ձեռնարկությունները, որոնք ունեն նյութական խթանման մեծ ֆոնդեր, նույնիսկ իրենց վատ աշխատողներին հեշտությամբ հատկացնում են բնակարան կամ ուրիշ բարիքներ։ Այն դեպքում, երբ որոշ ձեռնարկություններում, որտեղ այս կամ այն պատճառով չի ստեղծվել սեփական սոցիալական ինֆրաստրուկտուրա, շատ լավ աշխատողներ վաղուց սպասում են բնակարա- նամուտի, կամ չեն կարողանում ձեռք բերել հանգստի ուղեգրեր։ Անվճար ու արտոնյալ պայմաններում տարբեր աղբյուրներից ու տարբեր չափերով կեն- սական բարիքների հատկացումը հաճախ հանգեցնում է պետական միջոցների շռայլումների, հարուցում առանձին մարդկանց սպառողական տենչերը։

«ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում» շեշտված է՝ բարձրացնել սպառման հանրային ֆոնդերի արդյունավետությունը, այդ թվում ավելացնել միավորումների, ձեռնարկությունների, կազմակերպությունների ու կոլտնտեսությունների միջոցները։ Տվյալ խնդրի լուծումն առնչվում է «Ուղղությունների» այն ցուցումի հետ, որ անթույլատրելի են չարդարացվող կրկնությունը և զուգահեռականությունը առանձին հիմնարկությունների կողմից ու արտադրական ինֆրաստրուկտուրայի օբյեկտների ստեղծման նպատակով։ Բաշխման հարաբերությունների կատարելագործումն անխզելիորեն կապված է կենսական բարիքների բաշխման ոլորտում գերատեսչական մասնատվածությունը հաղթահարելու հետ։

Արդի բաշխման պրոցեսի դիալեկտիկան դրսևորվում է սոցիալական կյանքի կարևոր ոլորտներում վճարովիի ու անվճարի ընդլայնմամբ, ինչպես և սոցիալական այդ երևույթների ոլորտում պետության կարգավորիչ դերի ուժեղացմամբ։

Հասարակական օղակների միջոցով բնակչության դրամական միջոցների լիարժեք իրացումը կապահովի դրանց ժամանակին ու լրիվ մուտքը պետության տրամադրության տակ, որը հնարավորություն կունենա այդ միջոցներն օգտագործելու բնակշինարարության, առողջապահության, նախադպրոցական ցանցի, կուլտլուսհիմնարկությունների վրա, բարձրացնելու համապատասխան բարիքների ու սպասարկումների որակը։ Այդպիսով ստեղծվում է այդ ոլորտներում սոցիալապես երաշխավորված մինիմումի կայուն աճի նյութական հիմք։ Սոցիալական քաղաքականության նման ուղղությունը կոչված է բարձրացնելու բնակչության բոլոր կատեգորիաների սոցիալական բավարարվածությունը, ամրապնդելու սովետական մարդկանց գիտակցության մեջ սոցիալական վստահության ու սոցիալական արդարության զգացում, որոնք սոցիալիստական հասարակության ողջ կացութաձևի անխախտ հիմքերն են։

Կուսակցության XXVI համագումարի որոշումներում հստակ սահմանված են բաշխման ոլորտի զարգացման հիմնական միտումները՝ աշխատավորության բոլոր խմբերի կենսամակարդակների մերձեցում, ինչպես նաև նյութական խթանների այնպիսի համակարգի ստեղծում, որը մշտապես ապահովի յուրաքանչյուրի աշխատանքի արդարացի ու օբյեկտիվ գնահատականը։ Ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի հետևողական իրականացումը ենթադրում է լուծել մի շարք կարևոր սոցիալական պրոբլեմներ, որոնք անմիջականորեն չեն առնչվում աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։ Հա-

սարակության հաշվին երեխաների ու անաշխատունակների խնամքը հնարավորություն է ընձեռում աստիճանաբար թուլացնելու խնամարկյալների ազդեցությունն ընտանիքի աշխատող անդամների սպառման չափի վրա, «հարթելու» ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի խախտման հետևանքները ներընտանեկան եկամուտների վերաբաշխման պրոցեսում, ապահովելու առավել ամբողջական համապատասխանություն յուրաքանչյուր աշխատողի կատարած գործի ու աշխատավարձի միջև։

Կուսակցության պահանջների համաձայն սոցիալական ապահովության սիստեմը կատարելագործելու միջոցառումները և բազմանդամ ընտանիքներին տրվող օգնության ուժեղացումը կնպաստեն նվազեցնելու ընտանիքի նյութական դրության վրա այն գործոնների ազդեցությունը, որոնք պայմանավորված են աշխատանքի քանակով ու որակով։ Սպառման հանրային ֆոնդերի դերի մեծացման շնորհիվ տարբեր կազմի ընտանիքների անձնական եկամուտների մերձեցումը սոցիալ-դեմոգրաֆիական պրոբլեմների լուծման գործում հնարավորություն կընձեռի ակտիվորեն օգտագործելու աշխատանքի վճարման տարբերակումը, խթանելու բարձր աշխատանքային արդյունքները, սպառման մեջ պահպանելով այն սոցիալ-տնտեսական համամասնությունները, որոնք դրված են ըստ աշխատանքի բաշխման սկզբունքում։

ՍՄԿԿ XXVI համագումարը մեծ ուշադրություն նվիրեց սոցիալիստական հասարակության մեջ բաշխման հարաբերությունների կատարելագործմանը։ Հիրավի, բաշխման ոլորտը հասարակական կյանքի այն մարզն է, որտեղ անմիջականորեն միահյուսվում են աշխատավորների տնտեսական ու սոցիալական շահերը, ձուլվում արտադրության, ձեռնարկության և աշխատողների ընտանիքների պահանջմունքները։

«ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման» մեջ ասված է. «Կուսակցությունը ձգտում է այնպես անել, որ նյութական և հոգևոր բարիքների պահանջմունքի ընդհանուր աճի հետ մեկտեղ անշեղորեն հաղթահարվեն սոցիալական խմբերի և ռեգիոնների, քաղաքի և գյուղի միջև անցյալից ժառանգված տարբերությունները, որ հետևողականորեն կիրառվեն բաշխման արդարացի սոցիալիստական սկզբունքները, թույլ չտրվեն դրանց աղավաղումները։

Կոլեկտիվիզմի և ընկերականության մթնոլորտը, բոլոր ազգերի և ազգությունների համախմբվածությունը, բարեկամությունը, հասարակության բարոյական առողջությունը, իսկական դեմոկրատիզմը և սոցիալական լավատեսությունը, սոցիալիստական բարոյականությունից շեղումների նկատմամբ անհանդուրժելի վերաբերմունքը սովետական ապրելակերպի կարևորագույն հատկանիշներն են»։

Հասուն սոցիալիստական հասարակությունն օժտված է մեծ հնարավորություններով անհատի ավելի ու ավելի լիակատար զարգացման համար։ Այնուհանդերձ կարևոր է, որ յուրաքանչյուր մարդ կարողանա խելացիորեն օգտվել դրանցից։ Չէ՞ որ վերջին հաշվով այն պայմանավորվում է անհատի շահերով, պահանջմունքներով։ Ահա թե ինչու մեր կուսակցությունը սոցիալական քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը համարում է դրանց ակտիվ, նպատակասլաց ձևավորումը։

---

# ԴԱՍՏԻԱՐԱԿԵՆՔ ԱԿՏԻՎ ՈՒ ՀԱՅՐԵՆԱՍԵՐ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐ

**Գ. Ք. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

**ՍՄԿԿ** ԿԵՆՏԿՈՄԻ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ շեշտվում է, որ «ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը դիտում է որպես կոմունիզմի համար մղվող պայքարի կարևոր ճակատ։ Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հաջողություններից ավելի ու ավելի մեծ չափով են կախված երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման ընթացքը, հասուն սոցիալիզմի հնարավորությունների լիակատար իրացումը, Սովետական Միության լենինյան արտաքին քաղաքական կուրսի իրականացումը, նրա միջազգային դիրքերի ամրապնդումը»։

ՍՄԿԿ XXVI համագումարը Կենտկոմի այդ որոշումը բնութագրեց որպես երկարատև գործողության փաստաթուղթ։ Այնտեղ սահմանված են սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության հիմնական ուղղությունները ու խնդիրները մեր հասարակության զարգացման արդի փուլում։ Կուսակցության փաստաթղթում հատուկ ուշադրություն է նվիրվում աշխատավորների ու երիտասարդության շրջանում մարքս-լենինյան աշխարհայացքի, կոմունիստական համոզվածության ձևավորմանը։

Բուրժուական պրոպագանդան ձգտում է սովետական մարդկանց ուշադրությունը շեղել սոցիալական առաջընթացի արմատական հարցերից, կոմունիստական շինարարության խնդիրներից։ Գաղափարախոսության բնագավառում սոցիալիզմը ցուցադրում է սոցիալիստական գիտակցության աճ, որն արտահայտվում է մեր երկրի և եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորների աշխատանքային և քաղաքական ակտիվության, բարոյաքաղաքական միասնության մեջ։ Կապիտալիստական աշխարհում տեղի է ունենում ընդհանուր ճգնաժամի խորացում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Եվ դա կապիտալիստական պետություններին մղում է միլիտարիզմի ուղին, սրում գաղափարախոսական պայքարը, որի հիմնական օբյեկտներից է երիտասարդությունը։ Վերջինիս, որպես բնակչության սոցիալ-դեմոգրաֆիական խմբի, բնորոշ են որոշակի առանձնահատկություններ, որոնք պայմանավորվում են սոցիալ-տարիքային հատկանիշներով՝ նշանակալի կշիռը բնակչության շրջանում, հասարակական բարձր ակտիվությունը, հետաքրքրասիրությունը, հուզականությունը, սոցիալական փորձի պակասը։

Հաշվի առնելով այդ առանձնահատկությունները, բուրժուական պրոպագանդան փորձում է երիտասարդությանը շեղել արդիականության արմատական պրոբլեմներից, դասակարգային պայքարից, սերմանում սոցիալական անտարբերության, նիհիլիզմի ու նեգատիվիզմի տրամադրություններ։ Հին աշխարհի ջատագովները ձգտում են թունավորել սոցիալիստական երկրների և, ամենից առաջ, սովետական երիտասարդության գիտակցությունը։ Այդ նպատակով նրանք օգտագործում են գաղափարախոսական դիվերսիայի բոլոր ձևերն ու մեթոդները։

ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ որոշ երիտասարդ մարդկանց շր-

ջանում կրթվածությունն ու լավատեղյակությունը զուգորդվում են քաղաքական պարզամտության հետ: Հասարակական զանազան երևույթներն ու իրադարձությունները գնահատելիս դա արտահայտվում է ոչ բավարար հստակ դասակարգային դիրքորոշման, սոցիալիզմի մասին հակակոմունիստական պրոպագանդայի տարածած հերյուրանքների դասակարգային միտումը նկատելու անկարողության մեջ: Բուրժուազիայի գաղափարախոսներն աշխատում են թաքցնել իրենց դասակարգային շահը, գնահատականների ու գործողությունների դասակարգային բնույթը՝ շաղակրատելով գիտության օբյեկտիվության մասին, ճգնելով իրենց դիրքորոշումը հրամցնել համամարդկայինի քողի տակ: Անհատի ազատության, դեմոկրատիայի, կուլտուրայի մասին հակակոմունիստների դատողություններն արվում են կապիտալիզմը սրբագործելու, նրա բնածին արատները սքողելու միտումով: Սոցիալիզմը «կատարելագործելու» նրանց խորհուրդները միայն մի նպատակ ունեն՝ վերականգնել կապիտալիզմը: Մարքսիզմ-լենինիզմի դեմ ուղղված դասակարգային գաղափարախոսական պայքարի այս և մյուս քողարկված ձևերն ու եղանակները հրամայաբար պահանջում են շարունակ կատարելագործել գաղափարական-քաղաքական աշխատանքը ինչպես ամբողջ աշխատավորության, այնպես էլ հատկապես երիտասարդության շրջանում:

ՍՄԿԿ-ն մշտական ուշադրություն է նվիրում և անհրաժեշտ պայմաններ ստեղծում մեր երիտասարդությանը, այդ թվում ուսանողներին մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով զինելու, կոմունիզմի գործին հավատարմության, ակտիվ կենսադիրքորոշման ոգով դաստիարակելու, նրանց մեջ ամեն կարգի բուրժուական գաղափարախոսական դիվերսիաներին հակահարված տալու պատրաստակամություն արմատավորելու համար: Ուսանող երիտասարդության շրջանում կոմունիստական աշխարհայացքի ձևավորման նպատակով հսկայական աշխատանք են կատարում բուհերի կոլեկտիվները, ռեկտորատներն ու կուսակցական կոմիտեները, դեկանատներն ու ամբիոնները, կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները, ողջ պրոֆեսորադասախոսական կազմը: Պատասխանատու դեր են խաղում և կարևոր խնդիր լուծում բարձրագույն ուսումնական հաստատությունների հասարակական գիտությունների ամբիոնները, հասարակագետ դասախոսները:

«Հասարակական գիտությունների դասավանդման գաղափարատեսական մակարդակի բարձրացման ուղղությամբ Մոսկվայի Ն. Է. Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանում և Սարատովի Ն. Գ. Չերնիշևսկու անվան պետական համալսարանում տարվող աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Համառորեն ձգտել այն բանին, որ բարձրագույն դպրոցի յուրաքանչյուր շրջանավարտ ստեղծագործորեն տիրապետի մարքս-լենինյան տեսությանը, ձգտի մշտապես լրացնելու և խորացնելու իր գիտելիքները, դրանք կիրառելու կյանքում, ունենա կոմունիստական համոզմունքներ, բարոյական բարձր հատկանիշներ, լինի հայրենասեր և ինտերնացիոնալիստ, հետևողական մարտիկ բուրժուական գաղափարախոսության դեմ՝ հանուն կոմունիստական կուսակցության քաղաքականության իրականացման»:

Հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների 1981 թ. հոկտեմբերին կայացած համամիութենական խորհրդակցությունում շեշտվեց, որ այսօրվա ուսանողը ապագա մասնագետն է, որը մոտ ապագայում գլխավորելու է աշխատանքային կոլեկտիվներ, արտադրական տեղամասեր: Ահա ինչու շատ կարևոր է ապահովել ապագա մասնագետների պրոֆեսիոնալ և գաղափարաքաղաքական պատրաստության միասնությունը: Խորհրդակցությունում նշվեց, որ առաջնակարգ նշանակություն ունի մարքս-լենինյան ուսմունքի դասավանդման գաղափարատեսական մակարդակի բարձրացումը, ուսանողության կողմից հեղափոխական տեսության, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, ՍՄԿԿ փաստաթղթերի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների խոր ու սիստեմատիկ ուսումնասիրումը: Հարկավոր է հատուկ ուշադրություն դարձնել հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դաստիարակությանը, ուսանողների կողմից ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության, ինտերնացիոնալ ու ազգային միասնության ճիշտ ըմբռնմանը:



Հասարակագետ դասախոսներից պահանջվում է հետևողական ու համառ աշխատանք ուսանողների հետ ինչպես դասախոսությունների ու սեմինար պարապմունքների ընթացքում, այնպես էլ արտալսարանային աշխատանքի ժամանակ՝ մարքս-լենինյան տեսությանը տիրապետելու գործում նրանց համակողմանի օգնելու նպատակով: Անհրաժեշտ է ուսանողներին սովորեցնել ինքնուրույն կերպով բացահայտելու մարքս-լենինյան գաղափարախոսության և ՍՄԿԿ քաղաքականության միջև եղած փոխադարձ կապը, նրանց մոտ մշակել ռեֆերատներ, զեկուցումներ և հրապարակային ելույթներ պատրաստելու հմտություն, բանավեճերին մասնակցելու ունակություն: Հասարակական առարկաների դասավանդումը հարկավոր է վարել քաղաքական և սոցիալ-տնտեսական կոնկրետ պրոբլեմների, երիտասարդությանը հուզող հասարակական կյանքի հարցերի հետ սերտորեն կապակցված, կոմունիստական շինարարության պրակտիկայի, ուսանողների սոցիալական ակտիվության զարգացման հետ միասնության մեջ: Այս և մյուս խնդիրների լուծումը հասարակագետ դասախոսներից պահանջում է սոցիալական զարգացման երևույթների խոր իմացություն, իրազեկություն մեր երկրի, սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների միջազգային ու ներքին կյանքի, ընդհանրապես համաշխարհային քաղաքականության հարցերում, արդի գլոբալ պրոբլեմները միասնական կոմպլեքսի մեջ դիտելու, կոնկրետ թեմաների ուսումնասիրման ժամանակ դրանց փոխադարձ կապը արտացոլելու հմտություն:

Ուսանողների գաղափարական դաստիարակության ներգործուն միջոց է Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության, նրա հարուստ գաղափարական ժառանգության ուսումնասիրումը: Հասարակագետ դասախոսները կոչված են սովորեցնելու երիտասարդությանը՝ ապրել, աշխատել ու պայքարել լենինաբար:

Ուսուցման և դաստիարակության պրոցեսում հասարակագետ դասախոսները պետք է հատուկ ուշադրություն հատկացնեն այն բանին, որ ուսանողները ճիշտ ըմբռնեն ինտերնացիոնալի և ազգայինի միջև եղած կապը, խորապես գիտակցեն, որ սոցիալական հարաբերությունների համակարգում հիմնականը ոչ թե ազգային, այլ դասակարգային հարաբերություններն են, հստակ պատկերացնեն սովետական մարդկանց նոր հանրության՝ միասնական սովետական ժողովրդի էությունը, սոցիալիզմի օրոք ազգերի զարգացման ու մերձեցման հիմնական միտումները: Հասարակագետ դասախոսը կոչված է ո՛չ միայն դասավանդելու գիտելիքներ, այլև ուսանողին հաղորդելու իր համոզվածությունը, իր կուսակցական կրքոտությունը, իր բարոյական փորձը:

Կենսագործելով կուսակցության առաջադրած խնդիրները, վերջին տարիներին հանրապետությունում անցկացվել են գիտատեսական կոնֆերանսներ, խորհրդակցություններ բուհերի հասարակական գիտությունների ամբիոնների պրոֆեսորադասախոսական կազմի համար: Ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերը մշտապես գտնվում են բուհերի կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Նրանք անդուլ հոգատարություն են ցուցաբերում ուսումնադաստիարակչական պրոցեսի բարելավման նկատմամբ, գործնականորեն օգնում են պրոֆեսորադասախոսական կազմին՝ երիտասարդության հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները կատարելագործելու ասպարեզում:

Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի ռեկտորատը և կուսակցական կոմիտեն մշակել են ուսանողության կոմունիստական դաստիարակության աշխատանքի միասնական կոմպլեքսային հեռանկարային պլան, որն ընդգրկում է երիտասարդության կյանքի ու գործունեության բոլոր կողմերը ուսումնառության ողջ ժամանակահատվածում՝ հաշվի առնելով յուրաքանչյուր մասնագիտության, ինստիտուտի ֆակուլտետների և կուրսերի առանձնահատկությունները: Այստեղ մեծ ուշադրություն է նվիրվում նաև դաստիարակների դաստիարակության հարցերին: Ինստիտուտի ողջ դասախոսական կազմն ընդգրկված է քաղաքական ուսուցման խմբերում: Շատ հասարակագետ դասախոսներ քաղաքական ուսուցման խմբերի ղեկավարներ են, «Գիտելիք» ընկերության անդամներ, ընտրվել են կուսբյուրոների կազմում: Ինստիտուտի ռեկտորատը և կուսկոմիտեն սիստեմատիկ խորհրդակցություններ և կոնֆերանս-

Չնայած ուսանողների շրջանում տարվող ռազմահայրենասիրական աշխատանքների որոշ դրական արդյունքներին, պետք է նշել, որ այդ բնագավառում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ. նախ՝ ոչ բոլոր բուհերում են այդ աշխատանքները դրված պատշաճ մակարդակի վրա, դեռևս մեծ թվով ուսանողներ չեն մասնակցում անցկացվող միջոցառումներին, թույլ է օգտագործվում հեղափոխության պատմության, Հայրենական մեծ պատերազմի, Հայաստանի լենինյան կոմերիտմիության թանգարանների հնարավորությունները։

Բուհական կոմերիտական կազմակերպությունները և նրանց ակտիվիստները տարվում են առանձին մասշտաբային միջոցառումներ կազմակերպելով ու անցկացնելով և, ընդհակառակն, հետևողականություն չեն դրսևորում ֆակուլտետներում, կուրսերում և ակադեմիական խմբերում ռազմահայրենասիրական աշխատանքների աշխուժացման գործում։

Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին երկրի բարձրագույն դպրոցը կըպատրաստի չորս միլիոնից ավելի մասնագետ, մի քանի տասնյակ հազար մասնագետներ կպատրաստեն մեր հանրապետության բուհերը։ Նրանք, ովքեր այսօր դեռ նստած են ուսանողական նստարանին, իրենց աշխատանքային գործունեությունն սկսելու են մեր հայրենիքի համար բացառիկ կարևոր մի փուլում, երբ, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում, ստեղծվելու է ժողովրդատնտեսական այն կառուցվածքը, որով մեր հայրենիքը կթևակոխի նոր հազարամյակը։ Դա պետք է լինի սովետական մտավորականության ամենաառաջավոր, ամենապատրաստված, ամենահամոզված սերունդը։ Հենց այս դիրքերից էլ հարկավոր է մոտենալ ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության պատասխանատու գործին, նրանց մոտ մարքս-լենինյան աշխարհայացքի, կոմունիստական համոզվածության ձևավորմանը։

Ուսանողության կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը պատասխանատու կուսակցական խնդիր է, այն պետք է մշտապես գտնվի համապատասխան կուսակցական մարմինների, մինիստրությունների, բուհական կուսակցական կոմիտեների, ռեկտորատների, ամբիոնների, ամբողջությամբ վերցրած դասախոսական կազմի և, իհարկե, կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Պետք է նշել, որ այդ գործում թույլ տրված սխալները և թերությունները հետագայում անպայման դրսևորվում են երիտասարդ կադրերի աշխատանքային գործունեության բուն պրոցեսում, անդրադառնում նրանց՝ իբրև քաղաքացու և աշխատողի բարոյական նկարագրի վրա։

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Կուսակցական կազմակերպությունները պետք է հետևողականորեն հասնեն այն բանին, որպեսզի դաստիարակության գործը դառնա օրգանական, կոմպլեքսային, ամբողջական պրոցես, մշտապես հոգ տանեն յուրաքանչյուր աշխատավորի համակելու կոմունիստական գաղափարայնությամբ՝ որպես գիտելիքների, համոզմունքի և պրակտիկ գործունեության, ակտիվ կենսադիրքորոշման համաձուլվածք»։ Դա, ինչ խոսք, վերաբերում է նաև ուսանողության հետ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին։ Բուհական կուսակցական կազմակերպությունները, ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներով, կոչված են անելու ամեն ինչ ուսանող երիտասարդության կոմունիստական աշխարհայացքի ձևավորման կարևորագույն խնդիրը մեր հասարակության զարգացման արդի փուլի պահանջների ոգով լուծելու համար։

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԸ

**Գ. Վ. ԴԱՎԹՅԱՆ**
Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի
կուսկոմիտեի քարտուղար
**Մ. Գ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
ՍՄԿԿ պատմության ամբիոնի ավագ դասախոս

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ խնդիրների ընդլայնմանն ու բարդացմանը զուգընթաց բարձրանում են աշխատանքային կոլեկտիվների դերն ու նշանակությունը։ Հայտնի է, որ աշխատանքային կոլեկտիվներում են ձևավորվում սովետական մարդկանց սոցիալիստական հարաբերությունները, որոնց առանցքը կազմում են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը, փոխադարձ օգնությունը, հասարակական արտադրության զարգացման նկատմամբ շահագրգռությունը և այլն։

Աշխատանքային կոլեկտիվների միջուկը, նրանց քաղաքական ղեկավարն ու կազմակերպիչը սկզբնական կուսկազմակերպություններն են, որոնք ոչ միայն ղեկավարում են այդ կոլեկտիվներին, այլև իրենց գործունեության ընթացքում հենվում են նրանց վրա, մոբիլիզացնում նրանց ուժերը՝ լուծելու կոլեկտիվի ու կուսկազմակերպության առջև ծառացած խնդիրները։

Աշխատանքային կոլեկտիվների հետ ընդհանուր շատ բան ունեն ուսանողական կոլեկտիվները, որտեղ ձևավորվում են ապագա մասնագետների աշխարհայացքը և բարոյական վարքագիծը։ Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, նշվեց 1981 թ. հոկտեմբերին Մոսկվայում կայացած հասարակագիտական ամբիոնների վարիչների խորհրդակցությունում, ուսանողական կոլեկտիվներն ընդունակ են է՛լ ավելի ակտիվորեն մասնակցելու երիտասարդության հետ տարվող գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին։

Կուսակցական կազմակերպություններից պահանջվում է յուրահատուկ մոտեցում ցուցաբերել ուսանողական կոլեկտիվներում տարվող աշխատանքի նկատմամբ, այն հաշվով, որպեսզի հնարավոր լինի կարճ ժամանակամիջոցում համախմբել ուսանողներին, նրանց մեջ զարգացնել համագործակցությունն ու ընկերական հարաբերությունները։ Այստեղ հարկ է հիշել «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջն այն մասին, որ բոլոր կուսկազմակերպությունների մշտական հոգատարության և ուշադրության առարկան պետք է լինի երիտասարդության, աճող սերունդների դաստիարակության ըստ ամենայնի կատարելագործումը, այդ գործում կուսակցության յուրաքանչյուր անդամի դերի ու պատասխանատվության բարձրացումը։

Հինգերորդ տարին է, ինչ հայկական գյուղատնտեսական ինստիտուտում իր առաջավոր դիրքերը չի զիջում ագրոնոմիական ֆակուլտետի կոլեկտիվը։ Այստեղ չեն նկատվում դասաձախողումների ու դասալքումների դեպքեր, ամեն մի կոմունիստ հանդես է բերում բարձր պատասխանատվություն, դասախոսները ջանք չեն խնայում ուսանողությանը կայուն գիտելիքներ տալու, նրանց հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար։

Ֆակուլտետի դեկան Ա. Գևորգյանը և կուսբյուրոյի քարտուղար Թ. Հակոբյանը կազմակերպչական արդյունավետ աշխատանք են ծավալում ուսուցման պրոցեսի գիտական կազմակերպման, կարգապահության ամրապնդման և ուսանողների առաջադիմության հետագա բարձրացման նպատակով։ Այդ գործում նրանք ներգրավում են կոմունիստների ուժերը։

Ֆակուլտետում նկատելիորեն բարձրացել է դասախոսությունների գաղափարական ու գիտական մակարդակը։ Սեմինար, գործնական և լաբորատոր պարապմունքները խթանում են ուսանողների ինքնուրույն աշխատանքը։ Ուսման առաջադիմության բարձրացմանը զգալիորեն նպաստում են կուսբյուրոյի և դեկանատի կազմակերպած այնպիսի միջոցառումները, ինչպիսիք են հանդիպումները հանրապետության կուսակցական, սովետական և կոմերիտական ղեկավար աշխատողների, հին բոլշևիկների, պատերազմի ու աշխատանքի վետերանների, անվանի գիտնականների ու արտադրության առաջավորների հետ, հարց ու պատասխանի երեկոները, դասախոսությունները, զեկուցումներն ու զրույցները։ Այս ամենի շնորհիվ զգալի դրական տեղաշարժ է կատարվել ուսման որակական ցուցանիշների բարելավման, ուսանողների առաջադիմության և ուսումնական կարգապահության բարձրացման ասպարեզում։

Հաշվի առնելով կոլեկտիվի հսկայական դերն ուսանողների հետ տարվող աշխատանքի բնագավառում՝ ֆակուլտետի սկզբնական կուսկազմակերպությունը, նրա բյուրոն ավելի են ակտիվացրել իրենց գործունեությունը համերաշխ ուսանողական կոլեկտիվ ստեղծելու համար։ Բյուրոյի նիստերում ու կուսժողովներում պարբերաբար քննարկվում են ուսանողական կոլեկտիվի ամրապնդմանը, նրանում բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի հաստատմանն առնչվող հարցեր։ Ժողովներից մեկի օրակարգում, օրինակ, դրված էր ուսանողական կոլեկտիվներում տարվող աշխատանքի վիճակի հարցը։ Քննարկման անհրաժեշտությունն առաջացավ այն կապակցությամբ, որ սկսված նոր ուսումնական տարում ինստիտուտը պատանիների ու աղջիկների նոր համալրում էր ստացել, հարկ էր համախմբել նրանց և մերել ֆակուլտետի կոլեկտիվի հետ։

Որպես կանոն, առողջ ու գործունյա ուսանողական կոլեկտիվների ստեղծման գործը ֆակուլտետում սկսվում է առաջին կուրսից։ Ինստիտուտի առաջին կուրսերն ընդունվում են տարբեր քաղաքներից ու գյուղերից եկած պատանիներ ու աղջիկներ, որոնք իրար չեն ճանաչում և ծանոթանում են միայն ուսուցման ընթացքում։ Հաճախ տարբեր է լինում նրանց ընդհանուր զարգացման, կենցաղային կուլտուրայի մակարդակները։ Դաստիարակված լինելով տարբեր միջավայրերում՝ նրանք, բնականաբար, իրենց հետ բերում են և բնավորության ուրույն հատկանիշներ։ Թե ինչպես կոմունիստներին կհաջողվի համախմբել, միավորել ուսանողական կոլեկտիվը նրա կազմավորման առաջին իսկ օրվանից՝ ահա դրանով է մեծապես պայմանավորված նրա հետագա գործունեության հաջողությունը։

Կուսբյուրոյի նախաձեռնությամբ ուսանողական բոլոր խմբերում անցկացվել են ընդհանուր ժողովներ՝ «Ուսանողական կոլեկտիվների դերը բարձրագույն դպրոցում» թեմայով։ Հանդես գալով զեկուցումներով՝ կոմունիստներ Մ. Գյուլխասյանը, Ն. Կարապետյանը, Ա. Գևորգյանը, Է. Հայրապետյանը, Գ. Գալստյանը, Թ. Հակոբյանը, Ռ. Հարությունյանը և ուրիշներ ուսանող երիտասարդությանը պարզաբանել են կոլեկտիվի դերն ու նշանակությունը, ջանացել համախմբել ուսանողներին, որպեսզի նրանք օգնեն միմյանց, ժամանակին շտկեն տեղ գտած թերությունները, զարգացնեն քննադատությունն ու ինքնաքննադատությունը, անտարբեր չմնան կոլեկտիվի անդամներին հուզող հարցերի նկատմամբ, պայքարեն առաջադիմության բարձրացման, կարգապահության ամրապնդման համար։ Կուսբյուրոն ձգտում է հասնել այն բանին, որպեսզի կարճ ժամանակամիջոցում խումբը, կուրսը, ֆակուլտետը, ինստիտուտը դառնան ամեն մի ուսանողի հարազատ միջավայրը, նրա երկրորդ ընտանիքը։

Կուսակցական բյուրոյի գործունեության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում ուսանողական կոլեկտիվների հետ տարվող աշխատանքի փորձի փոխանակումը։ Բյուրոն պարբերաբար կազմակերպում է բազմավաստակ մանկավարժների ելույթը դասախոսների ու ամբիոնների աշխատողների առջև։ Այդպի-



սի մի հետաքրքրական ելույթով հանդես եկավ ընդհանուր երկրագործության
ամբիոնի վարիչ, պրոֆեսոր Ն. Կարապետյանը։ Նա պատմեց ուսանողական կո-
լեկտիվի ստեղծման համախմբման ու ամրապնդման իր փորձի մասին, նշե-
լով, որ առողջ, համերաշխ ուսանողական կոլեկտիվի առկայությամբ է ամենից
առաջ պայմանավորված ամեն մի ֆակուլտետի հաջողությունը։
Ուսանողական կոլեկտիվների ձևավորման ու ամրապնդման գործում մեծ
նշանակություն ունի աշխատանքային դաստիարակությունը։ Աշխատանքն այն
արդյունավետ միջոցն է, որի շնորհիվ մարդու մոտ զարգանում է ճիշտ մոտե-
ցում հասարակական կյանքի հանդեպ, ձևավորվում են բնավորության դրական
հատկանիշները, հաստատվում բարոյական նորմերը։
Ուսանող երիտասարդության աշխատանքային դաստիարակության կարե-
վոր օղակներից մեկը նրանց մասնակցությունն է շինարարական ջոկատներին։
Ամեն տարի ինստիտուտի ուսանողներից ավելի քան 400 մարդ ընդգրկվում է
շինարարական ջոկատների մեջ։ Ուսանողները հայրենասիրական աշխատանք
են կատարում Նովգորոդի, Բելգորոդի, Մարիական Ինքնավար Հանրապետու-
թյան կառույցներում, ինչպես նաև ինստիտուտի «Ոսկեհատ» ուսումնափորձ-
նական տնտեսությունում։ Այդ աշխատանքների նշանակությունը մեծ է ոչ
միայն այն առումով, որ ուսանողները մասնակցում են նյութական բարիք-
ների ստեղծմանը, այստեղ հաստատվում են նաև ընկերական սերտ փոխհա-
րաբերություններ, ամրապնդվում է կոլեկտիվիզմի ոգին։ Ուսանողների աշխա-
տանքային դաստիարակության համար, բնականաբար, օգտագործվում են բուն
ուսումնական պրոցեսը, կուլտուր-կենցաղային միջոցառումները, ուսումնա-
կան պրակտիկան, գերազանցիկ ուսանողների փորձի տարածումը։
Ուսանողական կոլեկտիվների արդյունավետ գործունեության գլխավոր
պայմաններից է ուսանողների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակ-
չական աշխատանքը։ Սովետական ժողովրդի և հատկապես երիտասարդության
գաղափարական ու քաղաքական դաստիարակության հարցերը միշտ էլ գտնվել
են կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում։ ՍՄԿԿ Կենտ-
կոմը «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի
հետագա բարելավման մասին» իր որոշմամբ կուսակցական կազմակերպու-
թյուններին պարտավորեցրել է ապահովել գաղափարական գործունեության
հարձակողական ոգին, օգտագործել դրա բոլոր ձևերը երիտասարդության
մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, հայրենասիրության ու ինտեր-
նացիոնալիզմի ոգով նրան դաստիարակելու համար։
Կուսակցության առաջադրած խնդիրներն իրագործելու նպատակով ագրո-
նոմիական ֆակուլտետի կուսկազմակերպությունն օգտագործում է ուսանող
երիտասարդության գաղափարական, քաղաքական և կուլտուրական դաստիա-
րակության բոլոր հնարավորությունները։ Այդ հարցում կուսբյուրոյին մեծ օգ-
նություն են ցույց տալիս հասարակական գիտությունների ամբիոնները։ Նրանց
դասախոսները ոչ միայն ուսումնական ժամերին, այլև դրանցից դուրս ուսա-
նողներին լայնորեն պարզաբանում են մեր կուսակցության հերոսական պատ-
մությունը, նրա դերը սոցիալիստական հեղափոխության կազմակերպման ու
իրականացման, սոցիալիզմի կառուցման գործում, նրա վարած լենինյան ներ-
քին ու արտաքին քաղաքականությունը։ Ուսանողների առջև մարքս-լենինյան
փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի պրոբլեմ-
ների շուրջ հետաքրքրական դասախոսություններով պարբերաբար հանդես են
գալիս պրոֆեսորներ Ս. Քոչարյանը, Ս. Ստեփանյանը, Հ. Կարապետյանը, Վ.
Գրիգորյանը, Պ. Ոսկերչյանը և ուրիշներ։ Դաստիարակության փորձված ու ար-
դյունավետ ձև են գրողների, գրականության և արվեստի աշխատողների հետ
ուսանողների հանդիպումները։ Նրանք ծանոթանում են այդ բնագավառների
գործերին, հաղորդակից դառնում նվաճումներին, ստանում իրենց հուզող հար-
ցերի պատասխանները։ Հետաքրքիր են անցել ուսանողների հանդիպումները
անվանի գրողներ Ս. Խանզադյանի, Հ. Շիրազի, Սիլվա Կապուտիկյանի, Գ.
Էմինի, Վ. Դավթյանի, ՍՍՀՄ ժողովրդական արտիստներ Մետաքսյա Սիմոնյա-
նի, Բաբկեն Ներսիսյանի և ուրիշների հետ։
Արդեն ութ տարի է, ինչ ինստիտուտում գործում են երիտասարդ կոմու-

նիստի և կոմերիտականի ակտիվի դպրոցներ, որոնց պարապմունքներին մասնակցում են նաև ագրոնոմիական ֆակուլտետի ուսանող կոմունիստներն ու կոմերիտականները։ Դպրոցների ունկնդիրներն ուսումնասիրում են կուսակցության արտաքին ու ներքին քաղաքականությունը, ներկուսակցական ու ներկոմերիտական կյանքը, զարգացած սոցիալիստական հասարակարգի առանձնահատկությունները։ Պրոպագանդիստներն առանձնահատուկ ուշադրությամբ արծարծում են նաև ուսանողական կոլեկտիվների դերն ու խնդիրները։

Ուսանողների քաղաքական աշխարհայացքի ձևավորման գործում զգալի դեր է խաղում քաղինֆորմացիան։ Քաղինֆորմացիա անցկացնելու գործում կուսակցական բյուրոն ընդգրկել է կոմունիստ դասախոսներ Յ. Սենեքերիմյանին, Ա. Ալագյանին, Գ. Գալստյանին, Ռ. Հարությունյանին, Գ. Միրզոյանին, Հ. Զաքարյանին, Լ. Պետրոսյանին և ուրիշների, որոնք վայելում են ուսանողության սերն ու համակրանքը։ Ամիսը երկու անգամ ուսանողական խմբերում անցկացվում է քաղինֆորմացիա ընթացիկ կյանքի տարբեր հարցերի շուրջ։ Ինստիտուտի 720 ուսանողներ ակտիվորեն մասնակցում են ամբիոններին առընթեր հասարակագիտական խմբակներին։ Դեկանատը, կուսբյուրոն և ամբիոնի վարիչները հետևողական աշխատանք են տանում նաև երիտասարդ դասախոսների շրջանում։

Ֆակուլտետում գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքին նոր լիցք հաղորդեց գաղափարական աշխատողների համամիութենական խորհրդակցությունը։ Քննարկելով խորհրդակցությունում առաջ քաշված պրոբլեմային հարցերը, կուսբյուրոն մշակեց միջոցառումների պլան, որի համապատասխան կազմակերպվեցին մի շարք դասախոսություններ։ Նախապատրաստվեց և անցկացվեց ուսանողական գիտական կոնֆերանս՝ նվիրված գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքին։ Կոնֆերանսում հանդես եկած ուսանողների զեկուցումներում կարմիր թելի պես անցնում էր այն միտքը, որ կոմունիստական կուսակցությունն իր ամենօրյա գործունեության ընթացքում մեծ ուշադրություն է նվիրում գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի արդյունավետ և կոմպլեքսային կազմակերպմանը, ձեռք առնում անհրաժեշտ միջոցներ սովետական մարդկանց և հատկապես երիտասարդության գաղափարական կոփվածքն ամրապնդելու համար։ ՍՄԿԿ XXVI համագումարում անդրադառնալով այդ հարցին՝ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «...խոսքն այն մասին է, որ գործնականում ձեռք բերվի կուսակցության գաղափարատեսական, քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական և տնտեսական աշխատանքի միասնությունը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 126)։ Այո՛, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հաջողության հիմնական պայմանը խոսքի և գործի միասնությունն է։ Խոսքը և գործը պետք է համընկնեն, շաղկապված լինեն, ուրիշ կերպ քաղաքական աշխատանքը չի հասնի իր նպատակին, չի շարժի մարդկանց։ Իսկ դա կուսակցության այսօրվա պահանջն է։ Կոնֆերանսում շեշտվեց, որ ուսանողները, խորությամբ ուսումնասիրելով կուսակցության քաղաքականությունը, պետք է կարողանան կիրառել նրա դրույթները ամենօրյա գործունեության մեջ, լայն պրոպագանդիստական աշխատանք ծավալեն բնակչության շրջանում։

ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը մեծ ոգևորություն առաջ բերեց բոլոր կոլեկտիվներում, ամենուրեք նպաստեց մարդկանց ակտիվության բարձրացմանը, նախաձեռնության զարգացմանը։ Ինստիտուտի կուսկոմիտեն, ֆակուլտետների կուսկազմակերպությունները լայնորեն պրոպագանդում են ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, բազմակողմանիորեն նախապատրաստվում փառապանծ տարեդարձին։ Նրանք մշակել ու հաստատել են միջոցառումների ընդարձակ պլան, որտեղ մեծ տեղ է հատկացվել ՍՍՀՄ-ի կազմավորման 60-ամյակին նվիրված գիտական կոնֆերանսների անցկացմանը։ Արդեն հրավիրվել է այդպիսի մի կոնֆերանս։ Կարդացած զեկուցումներում շոշափվում են մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հիմնական դրույթները, դրա կիրառման շնորհիվ ձեռք բերված նվաճումները տնտեսական, սոցիալ-քաղաքական կյանքի բոլոր ոլորտներում։



Ինստիտուտի գրադարանի ընթերցասրահում կազմակերպվել են ցերեկույթներ, հարց ու պատասխանի երեկոներ, ուսանող երիտասարդության առջև հանդես են եկել դասախոսներ Հ. Կարապետյանը, Մ. Բաղդասարյանը, Վ. Սահակյանը և ուրիշներ։

Կոմունիստների ծավալած քաղաքական-դաստիարակչական աշխատանքի շնորհիվ ավելի են ակտիվացել ուսանողական կոլեկտիվների գործունեությունը, նրանց մասնակցությունը ինստիտուտի հասարակական կյանքին, մեծացել է ներդրումը ուսման առաջադիմության բարձրացման, կարգապահության ամրապնդման գործում։

Ուսանողական կոլեկտիվում տարվող աշխատանքի դրական փորձ է ձեռք բերել նաև այգեպտղաբանջարաբուծական ֆակուլտետի սկզբնական կուսկազմակերպությունը։ Կուսբյուրոն կոմունիստների ուշադրությունը հրավիրում է ուսանողների հետ տարվող անհատական աշխատանքի վրա։ Քննարկելով այդ հարցը, կուսակցական բյուրոն նշեց, որ կոմունիստներն այդ ասպարեզում զգալի գործ են արել։ Արժեքավորվեց հատկապես կոմունիստ Հ. Շահինյանի աշխատանքային փորձը։

Ցավոք, դեռևս լինում են դեպքեր, երբ առանձին կոմունիստներ քիչ են մտահոգվում ուսանողների հետ տարվող անհատական աշխատանքով։ Անդրադառնալով այդ հարցին, կուսբյուրոն դասախոսներին պարտավորեցրեց ուսուցման պրոցեսը սերտորեն զուգակցել դաստիարակչական գործունեության հետ, ամեն կերպ օգնել դեկանատին ու կուսբյուրոյին՝ ուսանողական կոլեկտիվներում տարվող աշխատանքը ամուր հիմքերի վրա դնելու համար։

Ֆակուլտետի կուսակցական բյուրոն հատուկ ուշադրություն է նվիրում կոմունիստների ավանգարդային դերի բարձրացմանը։ Բարձրագույն դպրոցի պայմաններում դա ամենից առաջ նշանակում է ապրել ու գործել ուսանողական կոլեկտիվների բոլոր օղակներում, դառնալ նրանց ճանաչված ու առաջատար ուժը, լինել զգայուն և ուշադիր ուսանողների հանդեպ, հաղորդակից լինել նրանց խոհերին ու պահանջներին։

Ավանգարդային դերի բարձրացման գործում առանձնահատուկ նշանակություն ունի կոմունիստի անձնական օրինակը։ Ոչ մի բացատրական ու քաղաքական աշխատանք չի կարող տալ ցանկալի արդյունք, եթե այն չի ամրապնդվում անձնական օրինակով։ Այդ առումով ֆակուլտետի կոմունիստ դասախոսները լավ օրինակ են ծառայում ուսանող երիտասարդության համար, վայելում են նրանց ջերմ համակրանքը։ Ուսանելի է հատկապես Վ. Բադալյանի օրինակը։ Ունենալով մանկավարժական հարուստ փորձ, քաղաքական ու գիտական անհրաժեշտ պատրաստվածություն, նա մշտապես դասախոսությունները հարստացնում է նոր տվյալներով, կյանքից վերցրած օրինակներով։ Ուսանողների հետ ամեն մի հանդիպման նա պատրաստվում է նույն պատասխանատվությամբ, ինչ առաջին անգամ լսարան մտնելիս։ Կոմունիստի անձնական օրինակը հսկայական ազդեցություն է թողնում ուսանողական կոլեկտիվի վրա, իսկ վերջինս, իր հերթին՝ ամեն մի ուսանողի վրա։

Ինստիտուտի կուսակցական կազմակերպությունը, ռեկտորատի, դեկանատների, ամբիոնների հետ սերտ համագործակցած, հետևողական աշխատանք է տանում՝ ամրապնդելու ուսանողական կոլեկտիվները, բարձրացնելու նրանց դերն ու նշանակությունը ուսուցման պրոցեսի բոլոր բնագավառներում։

---

## ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում

# ՄԻԱՍՆԱԿԱՆ ՇԱՐՔՈՒՄ

**ԱԼԻՄՈՎ ՄՈՒՋԱՖԱՐ**
«Կոմունիստի Տոջիկիստոն» ամսագրի
գլխավոր խմբագիր

ՄԵՐ ՓԱՌԱՊԱՆԾ ԵՐԿՐԻ պատմության մեջ ՍՍՀՄ կազմավորումը խոշորագույն սոցիալ-քաղաքական իրադարձություն է: Վաթսուն տարում անցած ուղին համոզիչ կերպով ցույց տվեց սովետական բազմազգ պետության մոբիլիզացնող ու ստեղծարար ուժը: Այդ տարիներին ողջ երկիրը, բոլոր միութենական և ինքնավար հանրապետությունները, երկրամասերն ու մարզերը վիթխարի հաջողությունների հասան քաղաքական, սոցիալական, տնտեսական և կուլտուրայի զարգացման մարզերում:

Միավորումը մեկ միաձույլ միության մեջ, նյութական ռեսուրսների համակենտրոնացումը տնտեսական շինարարության հիմնական ու վճռական տեղամասերում ապահովեցին նրանց տնտեսական պոտենցիալի առավել արդյունավետ օգտագործումը հօգուտ երկրի բոլոր ժողովուրդների: Նրանց զարգացումն ընթացավ ժողովրդատնտեսական միասնական պլանի համաձայն: Դա հնարավորություն ընձեռեց հաջողությամբ լուծելու հեղափոխության գլխավոր հարցերից մեկը՝ մեր երկրում վերացավ ազգերի ու ազգությունների փաստական անհավասարությունը: Ստեղծվեց ու զարգացավ սովետական ազգերի միաձույլ և հզոր սոցիալիստական պետությունը:

Մեր երկրում քաղաքական, սոցիալ-տնտեսական և կուլտուրական փոփոխությունների ընդհանրացնող արդյունքն է զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը: Հասարակարգ, որտեղ հաստատվեցին հասուն սոցիալիստական հասարակական հարաբերություններ, հիմնականում լուծվեց սովետական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման խնդիրը: Կազմավորվեց մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը:

Այդ հանրության հիմքն են կազմում մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների պատմական ճակատագրի անբաժանելիությունը, նրանց նյութական և հոգևոր կյանքի օբյեկտիվ խոր փոփոխությունները, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, աշխատավոր մտավորականության անխախտ դաշինքը, իրավահավասարությունը, եղբայրական փոխօգնությունն ու համագործակցությունը, փոխադարձ հարգանքը և վստահությունը:

Սովետական ժողովրդի պատմական հասունների ակունքն է Մեծ Հոկտեմբերի հաղթանակը, որը շրջադարձային կետ հանդիսացավ մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների, այդ թվում և տաջիկ ժողովրդի կյանքում: ՍՍՀՄ կազմավորումը 1922 թվականին և այդ հիման վրա երկրի բոլոր ուժերի և ռեսուրսների միավորումը բարենպաստ պայմաններ ստեղծեցին բոլոր ազգերի և ազգությունների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, մեր բազմազգ պետության պաշտպանական հզորության և միջազգային դիրքերի ամրապնդման համար:



Սոցիալիզմը, նշել է Վ. Ի. Լենինը, ստեղծում է մարդկային համակեցության նոր, ավելի բարձր ձևեր, երբ ամեն մի ազգության աշխատավոր մասսաների օրինական պահանջմունքներն ու առաջավոր ձգտումներն առաջին անգամ կբավարարվեն ինտերնացիոնալ միասնության մեջ:

Անվերադարձ անցյալի գիրկն է անցել այնպիսի մի հասկացություն, ինչպիսին է «ազգային ծայրամաս» ու դրա հետ կապված այլ հասկացություններ: Որպես օրինակ վերցնենք թեկուզ Տաջիկստանի նախահեղափոխական ոչ վաղ անցյալը: Նրա այժմյան տարածքում Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ կային մի քանի փոքրիկ կիսատնայնագործական ֆաբրիկաներ ու գործարաններ, իսկ աշխատավոր մասսաները գտնվում էին ցարիզմի, Բուխարայի էմիրաթի, տեղական ֆեոդալների ու հոգևորականության բռնակալական ճնշման ներքո:

Մեծ Հոկտեմբերի դրոշի ներքո, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, եղբայրական ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ տաջիկ ժողովուրդը պատմական թռիչք գործեց դարավոր հետամնացությունից դեպի ժամանակակից սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական զարգացման բարձունքները: Տաջիկստանն այժմ ունի զարգացած հզոր ինդուստրիա, նորագույն տեխնիկայով հագեցված խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք ներկայացնում են իննսունից ավելի զարգացած ճյուղեր: Առանձնապես բարձր տեմպերով է զարգացել էլեկտրաէներգետիկան, գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունն ու մետաղամշակումը, քիմիական և սննդի արդյունաբերությունը, շինարարական ինդուստրիան: Հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1913 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 156 անգամ: Այժմ Տաջիկստանի արդյունաբերական արտադրանքներն առաքվում են բոլոր եղբայրական հանրապետությունները, այդ թվում և Հայկական ՍՍՀ, ինչպես նաև աշխարհի տասնյակ երկրներ:

Սոցիալիստական արդյունաբերության զարգացման հետ հանրապետությունում աճել ու ամրապնդվել է նոր բանվոր դասակարգը. եթե նրա թիվը 1913 թվականին ընդամենը մի քանի հարյուր էր, ապա այսօր այն հասել է գրեթե 650 հազար մարդու: Տաջիկստանի բանվոր դասակարգի բազմազգ կազմն իր էությամբ ինտերնացիոնալ է: Նա Տաջիկստանի աշխատավորների վճռական ուժն է, առաջավոր ջոկատը:

Հանրապետության աշխատավորներն առաջընթաց խոշոր քայլ են կատարել տասներորդ հնգամյակում: Երեք տարում հիմնական արտադրական ֆոնդերն աճել են 44 տոկոսով, ազգային եկամուտը՝ ավելի քան 20 տոկոսով, արդյունաբերական արտադրության ծավալը իններորդ հնգամյակի համեմատությամբ աճել է 29 տոկոսով, գործարկվել են 80-ից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ և խոշոր արտադրամասեր, այդ թվում լրիվ կարողությամբ գործում է Նուրեկի ՀԷԿ-ը, տաջիկական ալյումինի գործարանի էլեկտրոլիզի և թրծված անոդների նոր մասնաշենքերը, խոշոր կարողություններ Յավանի էլեկտրաքիմիական գործարանում: Ավարտվել է 279 կիլոմետր երկարությամբ Թերմեզ—Կուրգան—Թյուբե—Յավան երկաթուղու շինարարությունը:

Կուսակցության և կառավարության որոշումներին համապատասխան ձևավորվում է Հարավ-Տաջիկական տերիտորիալ-արտադրական համալիրը, որը վիթխարի ազդեցություն ունի Տաջիկստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման վրա: 1980 թվականին այն տվել է արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի մոտ կեսը:

Հարավ-Տաջիկական տերիտորիալ-արտադրական համալիրի առանձնահատկություններից է էներգետիկ մեծ պոտենցիալը, որը կազմում է ընդհանուր միութենական հիդրոէներգետիկ ռեսուրսների գրեթե 8 տոկոսը: Այդ պոտենցիալը ծառայում է ո՛չ միայն էներգետիկ, այլև ջրատնտեսական նպատակներին: Հիդրոկայանների էլեկտրաէներգիան նշանակալի ավանդ է ներդնում Միջին Ասիայի հանրապետությունների և ամբողջ երկրի վառելիքաէներգետիկ հաշվեկշռի մեջ: Ջրամբարների ստեղծումը ջրերի հոսանքը հավաքելու և կարգավորելու համար բարձրացնում է գետերի ոռոգման կարողությունը, հնա-

դրա հետ մեկտեղ իրեն զգում է առաջին հերթին սովետական մարդ, սովետական մեծ ժողովրդի զավակ:

Կուսակցության XXVI համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը մեծ գոհունակությամբ նշեց, որ ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական ու մշակութային կապերը դառնում են ավելի ու ավելի սերտ ու բազմապիսի, տեղի է ունենում ժողովուրդների մերձեցում, նրանց բարեկամության ու եղբայրության անքակտելի կապերի, միասնության ու համախմբվածության ամրապնդում: Սովետական ազգերի միասնությունն այսօր ամուր է, քան երբևիցե:

Տաջիկ ժողովուրդը, ինչպես և մեր երկրի յուրաքանչյուր սոցիալիստական ազգ, իր ավանդն է մուծում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, բազմազգ սոցիալիստական կուլտուրայի զարգացման, երկրի պաշտպանունակության ամրապնդման գործում, ձգտելով իր հանրապետության և ամբողջ Սովետական Միության նոր հզոր վերելքի ու բարգավաճման: Տաջիկստանը մյուս միութենական հանրապետություններին է առաքում ո՛չ միայն հումք լեռնահանքային, տեքստիլ, յուղի-ճարպի և արդյունաբերության այլ ճյուղերի համար, այլև ավտոմատ մանածագործական հաստոցներ, ուժային տրանսֆորմատորներ, կենտրոնախույս մրրկամուղ պոմպեր, փաթաթող մեքենաներ, գորգեր, սննդի և արդյունաբերության այլ ճյուղերի արտադրանքներ: Իր հերթին Տաջիկստանը ստանում է հաստոցներ, արդյունաբերական և էներգետիկ զանազան սարքավորումներ, գյուղատնտեսական մեքենաներ, բեռնատար ու մարդատար ավտոմեքենաներ, ճանապարհաշինական և հողափոր տեխնիկա, հանքային պարարտանյութեր, նավթամթերքներ և այլն:

«ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում» նախատեսված է համակողմանիորեն զարգացնել բոլոր սովետական հանրապետությունների, այդ թվում նաև Տաջիկական ՍՍՀ-ի էկոնոմիկան: Այստեղ հաշվի է առնված արտադրուժերի տեղաբաշխման ժամանակ ողջ ժողովրդական տնտեսության շահերն առանձին միութենական հանրապետությունների շահերի հետ ճիշտ զուգակցելու անհրաժեշտությունը: Դա կնպաստի սովետական երկրի ժողովուրդների բարեկամության առավել ամրապնդմանը:

Տասնմեկերորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի արտադրությունը Տաջիկստանում կաճի 24—27 տոկոսով: Շարունակվելու է Հարավ-Տաջիկական տերիտորիալ-արտադրական համալիրի ձևավորումը, ծավալվում է 3,6 մլն կվտ կարողությամբ Միջին Ասիայում ամենահզոր Ռոգունի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, որի ամբարտակը ունենալու է 340 մետր բարձրություն: Շահագործման կհանձնվի Բայփազինի հէկ-ը՝ 600 հազար կվտ-ժամ կարողությամբ: Էլեկտրաէներգիայի արտադրությունը հանրապետությունում կհասնի մինչև 16 մլրդ կվտ-ժամի: Արդյունաբերական արտադրանքի ծավալը միայն Հարավ-Տաջիկական տերիտորիալ արտադրական համալիրի ձեռնարկություններում կընդլայնվի 1,8 անգամ: Ընդ որում գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում աճը կկազմի 3,2, քիմիական արդյունաբերությանը՝ 2,6 անգամ: Բացի դրանից հանրապետությունում կառուցվում են Կայրակկումի գորգի և Իսֆարինի պահածոների կոմբինատի երկրորդ հերթերը:

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին արտադրությունը կավելանա 12—14 տոկոսով, հացահատիկի արտադրությունը կհասնի առնվազն 315 հազար տոննայի: Մսի արտադրությունը սպանդային քաշով կհասնի մինչև 110 հազար, կաթինը՝ 520 հազար տոննայի: Առավել կզարգանան այգեգործությունն ու խաղողագործությունը, ցիտրուսային կուլտուրաների պլանտացիաները և այլն:

Տասնմեկերորդ հնգամյա պլանով մեր հանրապետության առջև դրված այս և մյուս խնդիրները հնարավոր կլինի լուծել եղբայրական հանրապետու-



թյունների հետ փոխադարձ աջակցության և համագործակցության պայմաններում: Անտարակույս, յուրաքանչյուր հաջողություն մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների, ողջ սովետական ժողովրդի կոլեկտիվ ջանքերի արգասիքն է:

Մեր հանրապետությունում շատ ձեռնարկություններ ու կառույցներ հիրավի բազմազգ, ինտերնացիոնալ են: Օրինակ, Նուրեկի հէկ-ի շինարարության վրա աշխատել են 40 ազգությունների ներկայացուցիչներ: Իրենց կազմով բազմազգ են բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների կոլեկտիվները: Միայն Վ. Ի. Լենինի անվան պետական համալսարանում սովորում են 40-ից ավելի ազգությունների պատանիներ ու աղջիկներ:

Միաձույլ, համերաշխ, բազմազգ կոլեկտիվների ստեղծումն արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, ուսումնական հաստատություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում սոցիալիստական հասարակության բնորոշ առանձնահատկությունն է: Վերցնենք, օրինակ, հանրապետության ամենախոշոր գյուղատնտեսական արտելներից մեկը՝ Կումսանգիրի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունը: Կոլտնտեսության հողերը ձգվում են մինչև երկու լեռնային գետերի՝ Փյանջի և Վախշի միացման վայրը, որտեղ վերջանում է հովիտը և սկիզբ է առնում Միջին Ասիայի գլխավոր ջրային ուղին՝ Ամուդարյան: Մոտ երեսուն տարի սրանից առաջ այս վայրերը խանձված, անկյանք տափաստաններ էին: Իսկ այժմ այստեղ փռվել են բամբակի դաշտերը, պարտեզներն ու խաղողի այգիները, խորդենու և կիտրոնի պլանտացիաները, նռան և թզի պուրակները: Կոլտնտեսությունը ցանում է միայն երեք հազար հեկտար բամբակ: Անցյալ հնգամյակի տարիներին կոլտնտեսությունը պետությանն էր վաճառել մոտ 50 հազար տոննա «սպիտակ ոսկի»: Դա 1,5 անգամ ավելի է ժամանակակից Տաջիկստանի ողջ տարածքում 1913 թվականին արտադրվածից:

Բայց Լենինի անվան կոլտնտեսությունը հայտնի է ո՛չ միայն զարգացած էկոնոմիկայով. այստեղ ստեղծվել ու զարգանում է մի իսկական ինտերնացիոնալ կոլեկտիվ, որը միավորում է 20-ից ավելի ազգությունների՝ տաջիկների, ռուսների, ուզբեկների, ուկրաինացիների, կիրգիզների, լատիշների, հայերի, բելոռուսների, էստոնացիների, վրացիների և այլն: Ցանկացած ավանում, կոլտնտեսության ցանկացած բրիգադում կարելի է հանդիպել զանազան ազգությունների ներկայացուցիչների: Նրանք բոլորն էլ ապրում են համերաշխ, աշխատում են համատեղ, միասին անցկացնում իրենց ազատ ժամանցը: Գլխավորն այն է, որ այստեղ մարդկանց մասին դատում են ոչ թե այս կամ այն ազգությանը նրանց պատկանելությամբ, այլ քաղաքացիական պարտականությունների, հանրային տնտեսությունում կատարած աշխատանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքով:

Մեր մեծ Միության մյուս ժողովուրդների հետ բարեկամության, համագործակցության և փոխօգնության մեջ ենք մենք տեսնում մեր Տաջիկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության հետագա ծաղկման ու բարգավաճման գրավականը:

# ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԻՆՏԵԳՐԱՑԻԱՆ ԵՐԿՈՒ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

ԱՐՄԵՆՈՒՀԻ ԱՎԵՏԻՍՅԱՆ

*ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ դարաշրջանում մարդկության կուլտուրական զարգացման հեռանկարների կանխատեսումը էական գործնական նշանակություն ունի։ Մեթոդաբանական առումով կարևոր է հասուն սոցիալիզմի կոնցեպցիան։ «Զարգացած սոցիալիզմի բոլոր հնարավորությունների իմացությունը և օգտագործումը միաժամանակ նաև անցում է դեպի կոմունիզմի կառուցումը։ Ապագան ներկայի սահմաններից դուրս չէ։ Ապագան ներկայի մեջ է։ Եվ, լուծելով այսօրվա՝ սոցիալիստական օրվա խնդիրները, մենք հետզհետե թևակոխում ենք վաղվա օրը՝ կոմունիստական օրը» (Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 6, էջ 680)։*

*Սոցիալիզմի ամրապնդմանն ու զարգացմանը զուգընթաց առավել հստակորեն է ուրվագծվում սոցիալիստական պրոգրեսի հիմնական միտումը՝ նոր հասարակական սիստեմի առաջընթաց զարգացման բոլոր բաղադրամասերի ներդաշնակությունը և համաչափությունը։ Ընդ որում առանձին սոցիալիստական ազգերի զարգացման մակարդակների հավասարեցման այդ պրոցեսը պայմանավորված է սոցիալիզմի լագերի երկրների տնտեսական, քաղաքական և կուլտուրական փոխներգործության և մերձեցման տևական աճով ու խորացմամբ։ Ժողովուրդների բազմակողմանի մերձեցման պատմական պրոցեսի սկիզբը, ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, կապված է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծման, իսկ այնուհետև՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացման հետ։ Հասարակական կյանքի հիմնական բնագավառներից մեկը, որում ազգերի մերձեցման պրոցեսները մեր օրերում ստացել են «ավանդույթների հաստատունություն», կուլտուրական փոխներգործության ոլորտն է։*

*Վերջին տարիներին արդի դարաշրջանը բնութագրելու համար փիլիսոփայական գրականությունն ավելի հաճախ է կիրառում «ինտեգրացիա» հասկացությունը։ Եվ իրոք, կոմունիզմի կառուցման պայմաններում ինտեգրացիան դառնում է սոցիալիստական հասարակության տնտեսական, քաղաքական և բուն կուլտուրական զարգացման կարևորագույն չափանիշներից մեկը։ Ինտեգրացիոն պրոցեսների ծավալման օբյեկտիվ անհրաժեշտությունը պայմանավորված է հասարակական զարգացման բուն իսկ պրակտիկայով։ Էկոնոմիկայի ասպարեզում արտադրամիջոցների սոցիալիստական սեփականությունն այն հիմքն է, որն էկոնոմիկայի առանձին ճյուղերն ամբողջացնում է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի մեջ։ Սոցիալիստական արտադրության մեջ, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «ամեն մի խոշոր մեքենայական ինդուստրիա, այսինքն՝ սոցիալիզմի բուն նյութական, արտադրական աղբյուրն ու հիմքը— պահանջում է* այն կամքի *անպայման և խստագույն* միասնականություն, *որն ուղղություն է տալիս հարյուրավոր, հազարավոր և տասնյակ-հազարավոր մարդկանց համատեղ աշխատանքին» (*ԵԼԺ, *հ. 36, էջ 246)։ Եվ բնական է, որ ազգերի, ժողովուրդների ինտեգրացիան իրենց պրակտիկ կեն-*



*սագործունեությունում, իսկ դրա հետ մեկտեղ սոցիալիստական հասարակության գաղափարաքաղաքական և սոցիալական միասնությունը, անխուսափելիորեն պետք է արտացոլվեին նաև կուլտուրական փոխներգործության ոլորտում։ Այսպիսով, կուլտուրաների ինտեգրացման պրոբլեմը ներկայումս առաջ է մղվում ոչ թե տեսական դատողություններով, այլ պատմական զարգացման ռեալ ու ողջ ընթացքով։*

*Սոցիալիստական ազգերի կուլտուրաների հարաճուն մերձեցումը և ինտեգրացիան իրենից ներկայացնում է յուրաքանչյուր ազգային կուլտուրայի զարգացման առավել հեռանկարային ուղի։ Ինքնամփոփ յուրաքանչյուր ազգային մշակույթ անխուսափելիորեն տանում է տալիս, կորցնում համամարդկային հատկանիշները (տե՛ս Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 7, էջ 228)։ Եթե*
*ազգայինը ներկայացնում է ինչ-որ արժույթ, ապա սոսկ այնքանով, որքանով*
*հանդիսանում է համամարդկայինի արտահայտություն, քանզի ցանկացած*
*ազգային կուլտուրայի նշանակալիության և պրոգրեսիվության միակ չափա-*
*նիշը նրա բովանդակության համամարդկային մասշտաբայնությունն է։ Եվ*
*պատահական չէ, որ, բացահայտելով սոցիալիստական կուլտուրայի հետագա*
*զարգացման ուղղությունը, այդ կուլտուրայի մեջ համամարդկայինի ոլորտի*
*ընդլայնումը, ՍՄԿԿ ծրագիրը նշում է. «Կոմունիզմի կուլտուրան, իր մեջ կու-*
*տակելով և զարգացնելով այն ողջ լավագույնը, ինչ ստեղծել է համաշխար-*
*հային կուլտուրան, կդառնա մարդկության կուլտուրական զարգացման նոր,*
*բարձրագույն աստիճանը։ Այն կմարմնավորի հասարակության հոգևոր կյանքի*
*ողջ բազմազանությունը և հարստությունը, նոր աշխարհի բարձր գաղափա-*
*րայնությունը և հումանիզմը։ Դա կլինի անդասակարգ հասարակության, հա-*
*մաժողովրդական, համամարդկային կուլտուրա» (*ՍՄԿԿ ծրագիրը, *էջ 204)։*
*Այդ պատճառով էլ զարգացած սոցիալիզմի պայմաններում գործնականորեն*
*անհրաժեշտ է դառնում հետազոտել կուլտուրաների ինտեգրացման պրոցես-*
*ները, որոնք օրինաչափորեն նախապատրաստում և հետևողականորեն հան-*
*գեցնում են կոմունիզմի մեծ նպատակների իրագործմանը։ Դրա հետ մեկտեղ,*
*կուլտուրաների ինտեգրացման պրոբլեմը ներկայումս ամենասերտ կերպով*
*առնչվում է Վ. Ի. Լենինի առաջադրած և մեր կուսակցության ու կառավարու-*
*թյան կիրառած խաղաղ գոյակցության քաղաքականության հետ։*

*Ինտեգրացիան, առաջ գալով որպես ժամանակակից երևույթ, դավում է*
*այն հիմնական սոցիոլոգիական օրինաչափությունների շարքում, որոնց գոր-*
*ծողությունը դրսևորվում է բոլոր հասարակական ֆորմացիաներում։ Սակայն*
*մենք արդյո՞ք կարող ենք ինտեգրացիան դիտել որպես միասնական համաշ-*
*խարհային պրոցես։ Կարող ենք, եթե ինտեգրացիոն պրոցեսները վերլուծելիս*
*ամբողջովին բացառենք սոցիալական, տնտեսական, գաղափարախոսական և,*
*վերջապես, դասակարգային չափանիշները։ Այդ դեպքում մենք հարկադրված*
*կլինենք համաձայնվել բուրժուական սոցիոլոգ Պ. Սորոկինի հետ, «...որ եթե*
*մարդկությունը խուսափի նոր համաշխարհային պատերազմներից, ապա առաջ*
*եկող հասարակության և կուլտուրայի տիրապետող տիպը, հավանաբար, կլինի*
*ո՛չ կապիտալիստական, ո՛չ կոմունիստական, այլ կլինի մի յուրահատուկ*
*տիպ, որը մենք կարող ենք նշել որպես ինտեգրալային» (մեջբերումն արված*
*է ըստ Ս. Զ. Եշինի* Очерки марксистско-ленинской теории культуры
*գրքի, Մինսկ, 1974, էջ 333)։*

*Մարքսիզմը նույնպես ընդունում է ապագայի կուլտուրայի ինտեգրացիոն բնույթը, սակայն դրան հասնելու ուղիները պետք է փնտրել բոլորովին այլ ոլորտներում, որոնք բնավ էլ չեն հանգում համաշխարհային պատերազմից խուսափելու սոսկ ձգտմանը։*

*Բուրժուական սոցիոլոգիայում այնքան տարածված կոնվերգենցիայի տեսության հիմունքներից մեկը հակամարտ սիստեմներում եղած նման պրոցեսների միաժամանակյա լինելու աղավաղված մեկնաբանումն է։ Ինտեգրացիոն պրոցեսների առկայությունը և՛ կապիտալիզմի, և՛ սոցիալիզմի ժամանակ ամենևին էլ չի նշանակում, որ դրանց զարգացումը կարող է հանգեցնել համանման արդյունքների։*

Տարիներ առաջ «Красная звезда» լրագրում լույս տեսավ մի հաղորդագրություն. զետեղված էր այնտեղ և ճակատային բուժքույրերի մի խմբանկար: ՌՍՖՍՀ Վլադիմիրի մարզի Կովրով քաղաքի բնակիչ, պատերազմի վետերան Ա. Ջելենցովը զինվորական համազգեստով աղջիկների մեջ անմիջապես ճանաչում է Զոյիկոտային և՝ «Հարգելի Զ. Բաղդասարյան,— գրում է նա,— 1943 թվականի ապրիլյան օրերից մեկում Մալայա զեմլյայի մարտադաշտում ես ծանր վիրավորվեցի: Մեծ դժվարությամբ դուք ինձ դուրս բերեցիք կրակի տակից, հասցրիք ծովափ, հողե հյուղակում վերքս խնամքով փաթաթելուց հետո ուղարկեցիք թիկունքային հոսպիտալ, դուք իմ փրկիչն եք, և ես երբեք չեմ մոռացել ձեզ, ում պարտական եմ պատերազմից հետո ապրած ողջ կյանքս»:

Մուրմանսկի մարզի Տինդրա քաղաքից նախկին զինվորական, ավագ բուժքույր Ն. Կուշչը գրում է.

«Թանկագին Զոյիկոտա: Մալայա զեմլյայի մարտերից անցել է 35 տարի: Ինչպիսի՜ ծանր ու սոսկալի օրեր էին դրանք: Ապրելով մի թիզ հողի վրա, կրակի ու բոցերի միջից դուրս էինք բերում ծանր վիրավորներին, հասցնում ապահով տեղ, փրկում նրանց կյանքը... Շատ սոսկալի դեպքեր այնպես են տպավորվել հոգումս, որ մինչև կյանքիս վերջ չեմ մոռանա: Բախտավոր ենք, որ ողջ ենք մնացել...»:

Տարբեր վայրերում են ծնվել, տարբեր ազգերի զավակներ են Զոյան ու Զոյիկոտան: Պատերազմի տարիներին նրանք մտերմացել, հարազատացել են: Կովի դաշտում ծնունդ առած նրանց այդ անկեղծ հարազատությունը պահպանվում է մինչև օրս. հանդիպումներ, նամակներ, փոխայցելություններ...

Ահա և մի հատված Թբիլիսիի Մ. Բալանչիվաձեի անվան երաժշտական երրորդ դպրոցի կոլեկտիվի՝ պատերազմի վետերանին ուղղված նամակից.

«Թանկագին Զոյիկոտա, շնորհավորում ենք Ձեզ Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 60-ամյակի առթիվ: Դուք ակտիվ մասնակցել եք մեր հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, ֆաշիստական հրոսակախմբերի արշավանքից պաշտպանելու սրբազան գործին: Թող կործնեն պատերազմները, թող մարդկությունն այլև չտեսնի դրանք, թող միշտ պարզ լինի երկինքը...»:

Զ. Բաղդասարյանն իրեն միշտ զգում է շարքում, որպես պատերազմի վետերան հաճախ է հանդես գալիս պիոներական հավաքներում, աշխատավորական կոլեկտիվներում: Նրա սրտաբուխ, անկեղծ ու հուզաթաթավ խոսքը հասնում է ունկնդիրներին, զրուցակիցներին: Պատերազմի սարսափները տեսած ու ապրած մարտիկն այժմ էլ իրեն համարում է խաղաղության զինվոր:

— Այն, ինչ մենք ենք տեսել, թող չտեսնեն մեր զավակները, թոռներն ու ծոռները, թո՛ղ մարդկության ստեղծած բարիքները չդառնան մահաբեր ռումբերի ու արկերի ավերածության բաժին...

**ՍԻՄՈՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
ՀՍՍՀ վաստակավոր ժուռնալիստ,
պատերազմի վետերան



# *ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՕԳՏԱԿԱՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ*

**ՍՈՑԻԱԼԻԶՄԻ** քաղաքատնտեսության կարևոր պրոբլեմներից են տնտեսավարման պրակտիկայում սոցիալիզմի տնտեսական օրենքների ճիշտ օգտագործումը, դրանց գործողության մեխանիզմի իմացությունը հանրային արտադրության արդյունավետության և աշխատավորների բարեկեցության աճի գործում:

Այդ հարցերի գիտական մշակմանն է նվիրված տնտեսագիտության դոկտոր Ս. Ա. Բադալյանի աշխատությունը*: Գրքում հանգամանորեն քննարկվում են սոցիալիզմի տնտեսական օրենքների օբյեկտիվ բնույթի, համակարգի և օգտագործման պրոբլեմները: Հեղինակը նշում է, որ տնտեսական օրենքների օբյեկտիվ բնույթի իմացումը ոչ թե բացառում, այլ ենթադրում է, որ դրանց գործողությունը միջնորդավորվում է մարդկանց գիտակցական գործունեությամբ, արտացոլվում է նրանց գիտակցության մեջ և այդպիսով դրսևորվում պրակտիկ կյանքում:

Հեղինակն իրավացիորեն նշում է, որ տընտեսական օրենքների գործողությունը չպետք է կտրել մարդկանց գիտակցական ու նպատակադրված գործունեությունից, տնտեսական կյանքի զարգացման երևույթներին ու պրոցեսներին նրանց ակտիվ միջամտությունից: Այդ առումով աշխատությունում հանգամանորեն քննարկվում է սոցիալիզմի պայմաններում օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների հարաբերակցության հարցը, շեշտվում, որ հասարակական կյանքի զարգացման մեջ հիմնականն ու որոշիչը օբյեկտիվ գործոնն է, սակայն էական դեր է կատարում նաև սուբյեկտիվ գործոնը: Դա դրսևորվում է մարդկանց կամքի, գիտակցության, շահերի ու նպատակների գործողության միասնության մեջ:

Ուշադրության արժանի է տնտեսական օրենքների սիստեմային օգտագործման հարցի լուսաբանումը: Նշվում է, որ սոցիալիզմի տընտեսական օրենքների համակարգը ոչ թե դրա մեջ մտնող օրենքների մեխանիկական գումար է, այլ դրանց դիալեկտիկական ամբողջությունը: Դրանից հետևում է, որ տնտեսական օրենքների գործողությունը պետք է մեկնաբանել ոչ թե մեկը մյուսից կտրված ու անջատ, այլ սերտ կապերի ու փոխգործողության մեջ:

Սոցիալիստական էկոնոմիկայի՝ որպես միասնական ժողովրդատնտեսական համակարգի մասին պատկերացում կազմելու, նրա զարգացման օրինաչափությունները ճանաչելու և ճիշտ գնահատելու համար, շեշտում է հեղինակը, պետք է ելնել սոցիալիզմի տնտեսական օրենքների ողջ սիստեմի գործողությունից, որն ունի սոցիալ-տնտեսական միասնական նկրտում:

Ուշագրավ է հեղինակի այն դրույթը, որ սոցիալիստական էկոնոմիկայի մասշտաբների աճման, դրա զարգացման ինտենսիվության ուժեղացման և արտադրության առանձին օղակների միջև տնտեսական կապերի բարդացման հետևանքով, տնտեսական օրենքների փոխգործողության մեխանիզմը կարելի է ճիշտ հասկանալ դրա վերաբերմամբ սիստեմային մոտեցում ունենալու դեպքում միայն:

Երկրի տնտեսական զարգացման միտումների, տեմպերի ու համամասնությունների, աշխատավարձի աճի և տնտեսական խթանման ու տնտեսավարման շատ այլ հարցեր հնարավոր չէ ճշտորեն լուծել՝ առանց հաշվի առնելու սոցիալիզմի բոլոր տնտեսական օրենքների շարժառիթները՝ հիմնական տնտեսական օրենքի գործողության որոշիչ դերի պայմաններում:

Այստեղ լուսաբանվում է նաև սոցիալիզմի տնտեսական օրենքների օգտագործման հարցը: Ցույց է տրվում, որ տնտեսական օրենքների արդյունավետ օգտագործման կարևոր պայմանը օրենքների շարժառիթների ճանաչումն է, առանց որի հնարավոր չէ ճշտորեն կանխատեսել տնտեսական զարգացման ըն-

* *Ս. Ա. Բադալյան,* Սոցիալիզմի տնտեսական օրենքների օգտագործումը տնտեսավարման պրակտիկայում, *ԵՊՀ հրատ., 1982:*

թացքը, հաջողությամբ հաղթահարել սոցիալիստական էկոնոմիկայում ծագող դժվարությունները:

Տեղին է հեղինակի այն հարցադրումը, որ տնտեսավարման պրակտիկայում օրենքների ճանաչումն ու օգտագործումը միասնական պրոցես է: Տնտեսական օրենքների պահանջների օգտագործման հիմնական օղակները արտադրամիավորումները, ձեռնարկությունները, կոլտնտեսությունները, սովխոզները և մյուս տնտեսական բջիջներն են: Դրանցում են կոնկրետացվում տնտեսական օրենքների շարժառիթները: Ըստ որում, տնտեսական օրենքների ակտիվ օգտագործման հիմնական ուղին հեղինակը համարում է արտադրության սոցիալ-տնտեսական զարգացման ճիշտ պլանավորումը, իսկ տնտեսական օրենքների արդյունավետ օգտագործման գլխավոր նախադրյալը՝ սոցիալիստական մրցությունը, որը աշխատավորներին էկոնոմիկայի կառավարման մեջ ներգրավելու և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու հզոր միջոց է:

Աշխատության մեջ այնուհետև լուսաբանվում են սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության որոշ առանձնահատկություններ: Այդ օրենքը, լինելով սոցիալիզմի տնտեսական օրենքների միջուկը, որոշիչ դեր է կատարում տնտեսական օրգանիզմի համակարգում: Հիրավի, սոցիալիզմի տնտեսական համակարգի սոցիալ-տնտեսական միտումը կանխորոշվում է հիմնական օրենքի գործողությամբ: Դրա հետ միասին ցուցադրվում է, որ զարգացած սոցիալիզմի փուլում ավելի խոր ու սերտ են դառնում արտադրության անմիջական նպատակի ու դրան հասնելու միջոցների կապն ու փոխգործողությունը: Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի շարժառիթների ավելի լրիվ իրացման համար էական նշանակություն ունեն պարենային ծրագրի մշակումն ու իրականացումը, արդյունաբերության «Բ» խմբի ճյուղերի արագ վերելքը: Այդ կապակցությամբ նշվում է, որ հասուն սոցիալիզմի պայմաններում հիմնական տնտեսական օրենքի գործողության ակտիվացման համար պետք է ունենալ ոչ միայն արտադրության միջոցների, այլև անձնական սպառման առարկաների արտադրության զարգացած ճյուղեր: Ճշմարիտ է ասված, որ սոցիալիզմի ժամանակ մարդկանց պահանջմունքների բավարարման հնարավորությունները միշտ էլ որոշվել ու որոշվում են էկոնոմիկայի զարգացման ռեալ մակարդակով: Սակայն չպետք է մոռանալ նաև այն, նշում է հեղինակը, որ աշխատավորների պահանջմունքների բավարարման մակարդակը պայմանավորված է ո՛չ միայն երկրի ներքին, այլև արտաքին նախադրյալների զարգացմամբ:

Աշխատության հաջորդ գլխում քննարկվում են հասուն սոցիալիզմի ժամանակ ժողովրդական տնտեսության պլանաչափ, համամասնական զարգացման տնտեսական օրենքի գործողության հիմնական առանձնահատկությունները: Շեշտվում է, որ արդի պայմաններում ուժեղանում է պլանների սոցիալական նկրտումը: Անդրադառնալով ժողովրդատնտեսական համամասնությունների, պլանների հաշվեկշռվածության և ցուցանիշների հարցերին, հեղինակը դիմում է տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. որոշմանը:

Հասուն սոցիալիզմի փուլում առանձնակի նշանակություն ունի ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի գործողությունը. այս խնդրին է նվիրված աշխատության եզրափակիչ բաժինը: Այստեղ ցույց է տրված, որ երկրի զարգացման ամեն մի փուլում ճիշտ հարաբերակցություններ են սահմանվել հանրային արտադրության մեջ հասարակության յուրաքանչյուր անդամի ներդրած աշխատանքի քանակի ու որակի և դրանց համապատասխան նրա վարձատրության չափի միջև: Ըստ աշխատանքի բաշխման օրենքը շարունակում է ավելի մեծ դեր խաղալ ո՛չ միայն բաշխման հարաբերությունների կատարելագործման, այլև հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման խնդիրների լուծման գործում: Այդ օրենքով է գործում արտադրության տընտեսական խթանման համակարգը, ապահովվում աշխատանքի վարձատրության բարձրացումը, յուրաքանչյուր աշխատողի և կոլեկտիվի գործունեության արդյունքների չափը: Անշուշտ, սոցիալիզմի փուլում աշխատանքի վարձատրության տարբերակված սկզբունքի հետևողական իրագործումն օբյեկտիվ անհրաժեշտություն է: Այնուհետև արծարծված են ըստ աշխատանքի բաշխման և սպառման հանրային ֆոնդերից տրվող արտոնությունների ու վճարումների աճի միջև եղած հարաբերակցության հարցերը: Տեղին է շեշտվում, որ բաշխման հարաբերությունների համակարգում հիմնականն ըստ աշխատանքի բաշխումն է:

Հեղինակը լուսաբանել է նաև հասարակական աշխատանքի արտադրողականության անշեղ աճի տնտեսական օրենքի գործողության առանձնահատկությունները: Ցույց է տրված, որ արտադրողականության աճի մեջ պետք է արտահայտվեն ոչ միայն արտադրանքի միավորի արտադրության համար կենդանի և անցյալ աշխատանքի ծախսումների ռացիոնալ օգտագործումն ու հնարավորությունը, այլև որակը: Արդի փուլում, երբ երկրի տնտեսական առաջընթացի ծանրության կենտրոնը փոխադրվում է առավելապես ինտենսիվ զարգացման ուղու վրա, հատուկ նշանակություն է ստանում հասարակական աշխատանքի արտադրողականության անշեղ աճի, սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքի գործողության մեխանիզմի ակտիվացումը: Էական է նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի արագացման համար կարևոր նշանակություն ունեցող հումքի, վառելիքի, էներգետիկ և նյութական մյուս ռեսուրսների խնայողության և ռացիոնալ օգտագործման հարցը:

Գրքում ճիշտ է նկատված, որ տնտեսավարման ինտենսիվ մեթոդների ուժեղացման և հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետ օգտագործման հիման վրա, 80-ական թվականներին որոշակիորեն փոխվում է ազգային եկամտի և կապիտալ ներդրումների աճի տեմպերի հարաբերակցությունը: Տասնմեկերորդ հնգամյակում, ժողովրդական տնտեսության պլանավորման պրակտիկայում, առաջին անգամ նախատեսվում է կապիտալ ներդրումների ավելացման համեմատությամբ ազգային եկամտի առավել արագ աճ: Այնուհետև ժողովրդատնտեսական և ճյուղային համամասնությունների պահպանման խնդրի լուծման համար կարևոր է գյուղատնտեսության արագ զարգացումն ապահովող կուտակումների վերաբաշխման կուսակցության մշակած գծի շարունակումը (էջ 120):

Սոցիալիզմի ժամանակ ապրանքադրամական հարաբերությունների, արժեքի օրենքի և արժեքային կատեգորիաների օգտագործման համառոտ լուսաբանմամբ է ավարտվում սույն ուսումնասիրությունը:

Հարկ է նկատել, որ աշխատության մեջ կան վիճելի որոշ տեսական դրույթներ: Անդրադառնալով սոցիալիզմի տնտեսական օրենքների համակարգին, հեղինակը գտնում է, որ ինչպես ընդհանուր, այնպես էլ համընդհանուր տնտեսական օրենքները չպետք է ներմուծել սոցիալիզմի տնտեսական օրենքների սիստեմի մեջ: Դժվար է համաձայնել նման կարծիքի հետ:

Աշխատությունն ավելի կշահեր, եթե դրանում հանգամանորեն քննարկվեին սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության հետ առնչվող պահանջմունքների բարձրացման համընդհանուր օրենքի, պահանջարկի և առաջարկի տնտեսական օրենքի գործողության առանձնահատկությունների հարցը:

Հասարակական աշխատանքի արտադրողականության աճի գործոնները քննելիս հեղինակը չպետք է մոռացության տար շրջակա միջավայրի պահպանման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցը: Աշխատությունում կան որոշ կրկնություններ, առանձին տեղերում լեզվական անհարթություններ: Նշված դիտողությունները բնավ չեն նսեմացնում գրախոսվող ուսումնասիրության դրական արժանիքները, որը օգտակար աղբյուր է տընտեսական ղեկավար կադրերի, քաղաքատընտեսության դասախոսների, ասպիրանտների, ուսանողների և ընդհանրապես սոցիալիզմի քաղաքատնտեսության պրոբլեմներով զբաղվողների համար:

Ա. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
Տնտեսական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# ՀՐԱՏԱՐԱԿԵԼ Է «ԳԻՏԵԼԻՔ» ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ

## ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Կոմունիստական կուսակցությունը մեր դարաշրջանի միտքն է, պատիվը և խիղճը. ՍՄԿԿ XXVI համագումարը նոր ուժով կրկին հաստատեց լենինյան այս խոսքերի ճշմարտացիությունը: Այն սահմանեց մեր երկրի պատմական վերելքի նոր բնագիծը, հավաստեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տնտեսական ու սոցիալական առավելությունները արդի աշխարհում, համոզիչ կերպով ցույց տվեց, որ ՍՄԿԿ-ն պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հեղափոխական բոլոր ուժերի համախմբման հուսալի պատվարն է: «Պահպանել խաղաղությունը. միջազգային տեսակետից այժմ մեր կուսակցության, մեր ժողովրդի, ինչպես նաև մոլորակի բոլոր ժողովուրդների համար չկա ավելի կարևոր խնդիր»,— համագումարում շեշտեց ընկեր Բրեժնևը:

ՍՄԿԿ XXVI համագումարը նոր էջ բացեց սովետական ժողովրդի կյանքում, կոմունիստական կուսակցության պատմության մեջ. արդի բարդ ու լարված միջազգային իրադրության պայմաններում համագումարը պարզ և աներկբայորեն արտահայտեց սովետական կոմունիստների կամքը՝ ամեն ինչ անելու աշխարհում խաղաղության պահպանման համար, ցույց տվեց ռեալ սոցիալիզմի պատմական նվաճումները, նրա քաղաքական ու բարոյական գերազանցությունը կապիտալիզմի հանդեպ. այն մարքս-լենինյան ուսմունքը հարստացրեց կոմունիստական շինարարության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի արդի փուլի հետ կապված կարևոր ընդհանրացումներով ու հետևություններով, բացահայտեց ՍՄԿԿ-ի ինտերնացիոնալ մեծ առաքելությունը ողջ աշխարհի բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների առջև:

Մ. Մ. Հակոբյանն իր այս գրքույկում հանգամանորեն անդրադարձել է թեմային վերաբերող գրականությանը, լուսաբանել տվյալ ժամանակաշրջանում կուսակցության տնտեսական, սոցիալ-քաղաքական ու գաղափարական գործունեության արդյունքները, առաջիկա տարիների խնդիրները: Հատուկ տեղ է հատկացված միջազգային լարվածության թուլացման, խաղաղության պահպանման սովետական ծրագրին, համագումարում արծարծված կենսահույզ այլ խնդիրների միջազգային արձագանքներին:

Հեղինակը նշում է, որ ՍՄԿԿ XXVI համագումարի ուշադրության կենտրոնում էին տնտեսական քաղաքականության հարցերը զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում: Չէ՞ որ ժողովրդական տնտեսության ղեկավարումը կուսակցության ու պետության ողջ գործունեության առանցքն է, քանի որ էկոնոմիկայի բնագավառում է դրվում սոցիալական խնդիրների լուծման, երկրի պաշտպանունակության ամրապնդման, ակտիվ արտաքին քաղաքականության հիմքը: Կուսակցությունը մշտապես հետևում է Վլադիմիր Իլյիչի այն հանրահայտ ցուցումին, որ մեր գլխավոր քաղաքականությունն այժմ պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը:

Ժողովրդական տնտեսության ղեկավարման նկատմամբ կուսակցական, քաղաքական մոտեցման ելակետը եղել և մնում է՝ ամեն ինչ հանուն մարդու, հանուն մարդու բարօրության ծրագրային պահանջը, որի կենսագործման խնդրում առաջնակարգ նշանակություն ունեն ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնումը, դրանց որակի բարելավումը, սպասարկումների ոլորտի հետագա զարգացումն ու կատարելագործումը:

Անդրադառնալով երկրի ժողովրդական տնտեսությունն ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու պրոբլեմին, որը խոր և համակողմանի հիմնավորվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, հեղինակը նշում է, որ արտադրության ինտենսիվացման կուրսի իրականացման համար անհրաժեշտ է սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման պլանային մեթոդի կատարելագործում: Իսկ պլանավորման մեջ որակապես նոր երևույթ են երկարաժամկետ կոմպլեքս ծրագրերը:

Գրքույկում այնուհետև նշվում է, որ արդի փուլում սովետական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի զարգացման կարևոր առանձնահատկություններից մեկն այն է, որ մեր հասարակության մեջ պահպանվում և ամրապնդվում է բանվոր դասակարգի առաջատար, վճռական դերը, դասակարգ, որը միաժամանակ համակողմանի ազդեցություն է ունենում սովետական հասարակության մյուս դասակարգերի և սոցիալական խավերի մերձեցման, քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման, ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների հետագա զարգացման պրոցեսների վրա:

Սոցիալիստական շինարարության տարիներին վիթխարի փոփոխություններ են կատարվել նաև սովետական մտավորականության կառուցվածքի, աշխատանքի պայմանների ոլորտներում, նրա ողջ սոցիալական կերպարում: Անդրադառնալով մտավորականության դերին՝ հեղինակը նկատում է, որ դինամիկորեն անընդհատ աճող սոցիալական այդ խավը զարգացած սոցիալիստական հասարակության կառուցվածքի հիմնական բաղկացուցիչ տարրերից է:

ՍՄԿԿ XXVI համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց նաև սոցիալիստական ապրելակերպի նյութական ու հոգևոր հիմքերի ամրապնդմանը, նոր մարդու կերպավորմանը: Սոցիալիստական ապրելակերպի կարևոր նվաճումը, նշվում է գրքույկում, սովետական քաղաքացիների աշխատելու իրավունքն է: Սոցիալիստական ապրելակերպի հետագա կատարելագործումը ենթադրում է գաղափարական աշխատանքի գիտական կազմակերպում: Կոմունիստական դաստիարակության կարևոր խնդիրներից մեկն է այնպես անել, որ հասարակության անդամները ունենան նյութական ու հոգևոր բարիքներից օգտվելու ճիշտ կողմնորոշումներ ու սկզբունքներ: Երբեք չպետք է մոռանալ, որ կոմունիստական նորմերի ամեն մի խախտում մեծապես վնասում է մեր իրավակարգի հեղինակությանը, մեր ողջ հասարակության, նրա յուրաքանչյուր անդամի շահերին:

**Կուսակցությունը սովետական ժողովրդի ավանգարդն** է բաժնում խոսվում է կուսակցության ղեկավար դերի մասին. «Քսանվեցերորդ համագումարը մեկ անգամ ևս ցույց տվեց,— համագումարի իր եզրափակիչ ճառում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը հզոր, առողջ, հասուն կոլեկտիվ է: Կոմունիստները մեր հասարակության անսասան առանցքն են, նրա կենդանի հոգին: Նրանք ժողովրդի իսկապես հեղափոխական ավանգարդն են» **(ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 347)**:

Մեծ է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների գաղափարական ներգործությունը միջազգային քաղաքական կյանքի վրա: Խաղաղության խթանման, սոցիալական առաջընթացի և սոցիալիզմի գործի ամրապնդման, միջազգային հարաբերությունների, կուսակցության արտաքին քաղաքականության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի պրոբլեմներին հեղինակն անդրադարձել է գրքույկի հաջորդ բաժնում:

Չի կարելի չհամաձայնել այն դիտողության հետ, որ արդի պայմաններում աշխարհում նկատելիորեն սրվում է գաղափարախոսական պայքարը, արևմտյան իմպերիալիստական շրջանները ամեն միջոց գործադրում են քայքայելու, խարխլելու սոցիալիստական աշխարհը: Իմպերիալիզմի վտանգավոր ոտնձգություններին մեր կուսակցությունն ու սովետական պետությունը հակադրում են իրենց հաստատակամ ու տոկուն քաղաքականությունը, խաղաղ գոյակցության, փոխշահավետ և իրավահավասար համագործակցության, ժողովուրդների կենսական շահերի վճռական պաշտպանության հետևողական ու կոնստրուկտիվ քաղաքականությունը: Սովետական արտաքին քաղաքական ծրագիրը տոգորված է մեկ ընդհանուր ձգտմամբ— ժողովուրդներին զերծ պահել միջուկային պատերազմի սպառնալիքից, պահպանել խաղաղությունն աշխարհում:

## ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԲՆՈՐՈՇ ԳԾԵՐԸ

Այս վերնագիրն է կրում Ա. Խ. Թամազյանի գրքույկը, ուր դասախոս-պրոպագանդիստին օգնելու նպատակով նա առաջարկել է այդ թեմային վերաբերող եռակետ պլան, ապա համառոտակի մեկնաբանել արծարծվող հարցերը: Հեղինակը նախ հանգամանորեն խոսում է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու մարքս-լենինյան ուսմունքի մասին: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո սկսվում է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու երկարատև շրջանը: Սակայն, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, սոցիալիզմի կառուցումը իսկույն չի կարելի իրականացնել. կյանքի բոլոր բնագավառներում արմատական փոփոխություններ կատարելու համար ժամանակ է հարկավոր: Բուրժուական եղանակով տնտեսավարելու սովորույթի հսկայական ուժը կարելի է հաղթահարել միայն երկար, համառ պայքարով: Կոմունիստական հասարակության տնտեսական ֆորմացիայի գոյացման պրոցեսը Մարքսը հանգամանորեն բաժանել է երեք հիմնական ժամանակաշրջանների— կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջան, կոմունիստական ֆորմացիայի ստորին փուլ՝ սոցիալիզմ և բարձրագույն փուլ՝ կոմունիզմ:

Շահագործող դասակարգերի վերացումը, ժողովրդական տնտեսության մեջ արտադրամիջոցների հանրային սեփականության ստեղծումը դեռևս թույլ չեն տալիս անմիջականորեն անցնելու կոմունիզմին, անհրաժեշտ է ստեղծել դրա համար սոցիալական, քաղաքական-գաղափարական և կուլտուրական նախադրյալներ: «Ինչպիսիք էլ լինեն սոցիալիզմ կառուցող երկրների յուրահատուկ պայմանները,— գրել է Լ. Ի. Բրեժնևը,— սեփական հիման վրա նրա կատարելագործման փուլը հասուն, զարգացած սոցիալիզմի փուլը սոցիալական վերափոխումների անհրաժեշտ օղակն է, զարգացման համեմատաբար տևական ժամանակաշրջան կապիտալիզմից դեպի կոմունիզմ տանող ճանապարհին» (**Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին**, էջ 10): Ապա հեղինակը խոսում է կոմունիստական շարժման մեջ «ձախերի»՝ կապիտալիզմից միանգամից կոմունիզմին անցնելու սխալ թեզի դեմ Լենինի մղած պայքարի մասին: Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները նշել են, մեր երկրի և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների փորձն էլ վկայում է, որ սոցիալիզմն ու կոմունիզմը հասարակական-տնտեսական առանձին ֆորմացիաներ չեն, այլ կոմունիստական ֆորմացիայի զարգացման տարբեր փուլեր:

Սոցիալիստական հասարակարգը հետզհետե կատարելագործվում, զարգանում է: Մեր երկրում ստեղծվել են տնտեսության, ժողովրդի նյութական բարեկեցության վերելքի, կուլտուրայի ծաղկման լայն հնարավորություններ: ՍՍՀՄ-ում իրոք արդեն կառուցվել է զարգացած սոցիալիզմ: Այստեղ ճշմարիտ է ասված, որ հասարակության արտադրաուժերի համակողմանի ու ներդաշնակ աճն ապահովում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա, աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացումը, գյուղատնտեսական աշխատանքի վերածումը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի, սոցիալիստական արտադրահարաբերությունների անընդհատ զարգացումն ու կատարելագործումը, կուլտուրայի վերելքի, ժողովրդի բարեկեցության մակարդակի բարձրացումը և այլն:

Մեր հասարակությանը բնորոշ են նյութական ու հոգևոր մեծ հնարավորությունները անհատի բազմակողմանի զարգացման համար: Կոփվել, առավել կուռ է դարձել բանվորների, գյուղացիների ու մտավորականության դաշինքը: Չպետք է մոռանալ, սակայն, որ հասուն սոցիալիզմի հասարակությունը դեռևս անդասակարգ հասարակություն չէ: Դասակարգերի լրիվ վերացումը կկատարվի միայն լիակատար կոմունիզմի ժամանակ: Սակայն այսօրվա հասարակությունը բոլորովին էլ այնպիսին չէ, ինչպիսին էր սոցիալիզմի հաղթանակից անմիջապես հետո: Հասարակական կյանքի զարգացմանը զուգընթաց խորտակվել են մարդկանց դասակարգերի բաժանող միջնորմները, ձեռք է բերվել աշխատանքի ու արտադրամիջոցների սոցիալիստական հանրայնացման բարձր մակարդակ: Ինտերնացիոնալիզմի ըսկըզբունքների հաղթանակի շնորհիվ տեղի են ունեցել ազգերի համակողմանի ծաղկում և մերձեցում: Դասակարգերի ու ազգերի մերձեցման, նրանց փաստացի հավասարության արգասիքն է այն, որ աստիճանաբար հաղթահարվում են քաղաքի ու գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքների տարբերությունները: Բանվոր դասակարգի քանակական ու որակական աճին զուգընթաց նկատվում է գյուղատնտեսական արտադրության մեջ ըզբաղված բնակչության նվազում:

Հասուն սոցիալիզմի հասարակությունը բընութագրվում է նաև համաժողովրդական պետության կատարելագործմամբ ու զարգացմամբ: Այստեղ կազմավորվում են միասնական սոցիալիստական ապրելակերպ և միասնական սոցիալիստական գիտակցություն: Եվ միանգամայն օրինաչափ է, որ մարքս-լենինյան տեսության ավելի խոր տիրապետման խնդիրը ամենաառաջնային խնդիրներից է:

Այնուհետև հեղինակն անդրադառնում է տարբեր երկրներում, տարբեր ժամանակ սոցիալիզմի կառուցմանն ու դրա առանձնահատկություններին, նշում, որ բոլոր սոցիալիստական երկրները, իրենց երկրի դասակարգային ուժերի հարաբերակցության և ազգային կացութաձևերին համապատասխան, իրականացրել են հեղափոխությունները և ստեղծել ինքնատիպ սոցիալիստական կացութաձև:

Սովետական ժողովուրդը առաջինը կառուցեց զարգացած սոցիալիստական հասարակություն, ուստի և մեր երկրի փորձն ունի միջազգային պատմական մեծ նշանակություն, և դրա լուսաբանման ու տարածման գործը պետք է լինի մեր գաղափարախոսական ճակատի աշխատողների առաջնահերթ խնդիրներից մեկը:

## ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՏԱԳԱ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Գրքույկն օգնում է ընթերցողին ավելի խոր ու համոզիչ ընկալելու ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած հարցադրումները:

ՍՄԿԿ-ն, նրա Կենտրոնական կոմիտեն նոր հասարակարգի կառուցման բոլոր փուլերում



ուշադրություն են դարձնում կոմունիզմի գործին նվիրված անհատի՝ նյութական և հոգևոր արժույթներ արարողի դաստիարակությանը, նրան հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի, կոլեկտիվիզմի ու հումանիզմի ոգով տոգորելուն: Մարդու հասարակական վեհ նպատակների ձգտումը, գաղափարական համոզվածությունը, աշխատանքի հանդեպ ստեղծագործական մոտեցումը և տիրոջ զգացումի դաստիարակումը կուսակցությունը համարում է իր առաջնահերթ խնդիրը, գրում է հեղինակը՝ Ա. Ս. Հովսեփյանը:

Հասուն սոցիալիզմի արդի փուլում պահանջվում են աշխատավորների գիտակցականության հետագա բարձրացում, կազմակերպվածություն և կարգապահություն, մարդու գաղափարական ու բարոյական վսեմ հատկանիշների դաստիարակում: Գրքույկում խոսվում է այն մասին, որ մեր հասարակարգում ըստեղծված են բոլոր պայմանները բազմակողմանի ու ներդաշնակ զարգացած անհատի կերպավորման համար: Սոցիալական իրականության, մեր ապրելակերպի ընձեռած հնարավորություններով, մեր հասարակության գործերի ողջ ընթացքով է պայմանավորված նոր մարդու պատշաճ դաստիարակության ապահովումը: Կուսակցությունն ըստ այդմ էլ մշակել է կոմպլեքսային դաստիարակության հստակ և գործուն ծրագիր:

Կոմունիստական դաստիարակության տեսության մեջ և պրակտիկայում մեծ ներդրում են ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները, **Մալայա զեմլյա**, **Վերածնունդ**, **Խոպան**, **Հուշեր** քառագրությունը, որտեղ անձնական օրինակով, կյանքի իրավիճակների բազմազանությամբ, խոսքի ու գործի միասնության մեջ բացահայտված են կուսակցության գաղափարադաստիարակչական սկզբունքները:

Մեր երկրում ստեղծվել է բարոյահոգեբանական նպաստավոր մթնոլորտ, որը խարսխվում է սովետական հասարկության գաղափարաքաղաքական և սոցիալական համախմբվածության վրա: Սոցիալիստական հասարակարգի զարգացման արդի պայմաններում գաղափարադաստիարակչական աշխատանքի նոր փուլ նշանավորեց ՍՄԿԿ XXVI համագումարը, որը ծանրակշիռ ավանդ ներդրեց սովետական ժողովրդի ստեղծագործ աշխատանքի, արտաքին քաղաքական բարենպաստ պայմանների հաստատման, համընդհանուր խաղաղության ապահովման գործում: Համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, հիրավի, մարքս-լենինյան գիտության ստեղծագործական զարգացման նոր, խոշոր քայլ է: Կուսակցությունը երևան է հանում սոցիալիստական վերընթացի նոր ուժեր ու հնարավորություններ, կանխանշում երկրի ընթացիկ ու հեռանկարային խնդիրները: Ելակետ ունենալով լենինյան այն հիմնադրույթը, որ սոցիալիստական հասարակության առաջընթացն զգալիորեն պայմանավորված է նրա սոցիալական հարաբերությունների և քաղաքական սիստեմի զարգացման աստիճանով, համագումարը խորությամբ, մարքս-լենինյան դիրքերից ընդհանրացրեց ակնբախ փոփոխությունները բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության սոցիալական կերպարում ու փոխհարաբերություններում:

Սովետական մարդու ներդաշնակ զարգացումն անկարելի է պատկերացնել առանց կուսակցության վերակերտիչ գործունեության, տնտեսական, սոցիալ-քաղաքական և, բնականաբար, գաղափարադաստիարակչական հըսկայածավալ աշխատանքի: Ահա թե ինչու ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը համարում է կոմունիզմի համար մղվող պայքարի կարևորագույն ճակատը, իր ծրագրային գլխավոր նպատակը: «Մենք ուզում ենք, որ կուսակցական քաղաքականությունը միաձուլվի մասսաների գործունեության հետ...», ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում: Միայն այս ճանապարհով կարելի է հասնել բարձր արդյունավետության քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բոլոր տեղամասերում:. Այդ թվում այնպիսի կարևոր բնագավառներում, ինչպես մասսայական-քաղաքական աշխատանքն է և կուսակցական լուսավորությունը: Այդ գործի կարևորությունը նկատի ունենալով՝ համագումարը պահանջեց պատշաճ ուշադրություն նվիրել պրոպագանդիստների ընտրությանը, պատրաստմանը, անհրաժեշտ ինֆորմացիայով նրանց ապահովելուն:

Հեղինակը տեղին է նկատում, որ մեր երկրում զանգվածային ինֆորմացիայի միջոցները, հանդիսանալով կուսակցության ու ժողովրդի հոգևոր զարգացման հզոր զենքը, կոչված են գաղափարապես ապահովելու աշխատավորության հետագա առաջընթացը: Այդ կարևորագույն նպատակին է ծառայում սովետական մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության ողջ գործունեությունը:

Նոր մարդու ձևավորումը տևական ու բարդ պրոցես է, որտեղ զգալի է նաև գրականության, կերպարվեստի, երաժշտության, կինոյի ու թատրոնի դերը: Կուսակցականության, ժողովրդայնության, սոցիալիստական ռեալիզմի հիմնարար սկզբունքների վրա խարսխված մեր գրականությունն ու արվեստը կոչված են համակողմանիորեն արտացոլելու կյանքը, գե-

ղարվեստական ներգործության ողջ ուժով մարդուն տոգորելու վեհ գաղափարներով, կոմունիստական բարոյականությամբ օգնելու նրա ակտիվ կենսադիրքորոշման մշակմանը:

Այստեղ ճշմարիտ է ասված, որ հարկավոր է խորությամբ բացահայտել ու մերկացնել կապիտալիզմի արատները, փաստարկված հարձակողական բնույթ տալ կապիտալիզմի քաղաքական սիստեմի քննադատությանը, բացահայտել բուրժուական դեմոկրատիայի սահմանափակ բնույթը, բուրժուական կեղծ դեմոկրատիային հակադրել անձի իրավունքների ու ազատության իրական պահպանությունը սոցիալիզմի պայմաններում: Հարկավոր է համակողմանի բացահայտել սոցիալիստական ապրելակերպի բովանդակությունը, այնպիսի արժույթների էությունը, ինչպիսիք են՝ գիտակցական վերաբերմունքը աշխատանքի ու հասարակական սեփականության նկատմամբ, քաղաքացիականությունը, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը, փոխադարձ օգնությունը, սոցիալիստական դեմոկրատիզմը, սոցիալական ակտիվությունը: Բնավ չանտեսելով կապիտալիստական երկրներում տարածված հակասովետիզմն ու հակակոմունիզմը՝ անհրաժեշտ է ո՛չ միայն ետ մղել դասակարգային հակառակորդի հարձակումները, այլև հակագրոհել, գաղափարապես զինաթափել, պայքարը տեղափոխել հակառակորդի «դաշտը»:

Գրքույկում կարդում ենք, որ մեր հանրապետության կուսակցական կազմակերպություններում ծավալուն աշխատանք է տարվում ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների ու դրույթների լայն պրոպագանդման ու խոր ուսումնասիրման նպատակով: Կուսկազմակերպությունները ձգտում են այն բանին, որ համագումարի առաջադրած հանձնարարականները դառնան արտադրական կոլեկտիվների զարգացման խթաններ, որպեսզի ամեն մի աշխատավոր պարզորոշ պատկերացնի իր դերն ու պատասխանատվությունը կուսակցության պլանների կատարման գործում:

Ընթերցողը, անշուշտ, ուսանելի նյութ կքաղի այս գրքույկից:

---



---

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲԱՅՆԻԿՅԱՆ

---

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

---

*Հանձնված է շարվածքի՝ 17.07.82 թ.: Ստորագրված է տպագրության՝ 10.08.82 թ.: ՎՖ 05359: Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15232: Պատ վեր՝ 1773:*

---

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.